Փետրվարի 23-ը
սովետական բանակի
և ռազմածովային նավատորմի օրն է

«ԾՋԵՐԹ», ԱՐՏԱԿ ՍԱՐԳՍՅԱՆ 10 տ., Երևան

# ՊԻՈՆԵՐ

ՀԼԿԵՄ ԿԵՆՏԿՈՄԻ ԵՎ Վ. Ի. ԼԵՆԻՆԻ ԱՆՎԱՆ ՊԻՈՆԵՐԱԿԱՆ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅԱՆ ՀԱՆՐԱՊԵՏԱԿԱՆ ԽՈՐՀՐԴԻ ՄԱՆԿԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ

ՀԱՍՑԵՆ՝ 375015, ԵՐԵՎԱՆ 15, ԿԱՐՄԻՐ ԲԱՆԱԿԻ ՓՈՂՈՑ № 15: ՀԵՌԱԽՈՍՆԵՐ՝ 56—32—72, 58—08—33, 56—14—96, 56—43—38:

«Пионер». На армянском языке. Ежемесячный детский журнал ЦК ЛКСМ Армении и Республиканского Совета пионерской организации им. В. И. Ленина. Адрес редакции: 375015, Ереван-15, ул. Кармир банаки, № 15.

Լույս է տեսնում 1923 թվականից

## Այս համարում 2 • 86



Հանձնված է տպագրության 18.XI.1985 թ.: Ստորագրված է տպագրության 7.II.1986 թ.: ՎՖ 06537: Թուղթ օֆսեթ, 70×100 1/16: Տառատեսակը՝ Նորք: Օֆսեթ տպագրություն, 2,92 պայմ. մամ., 3,9 հրատ. մամ.: Տպաքանակ՝ 69532: Պատվեր 2550: Գինը՝ 15 կոպ.:

Տպագրված է ՀԿԿ Կենտկոմի հրատարակչության տպարանում, Օրջոնիկիձեի պողոտա 2:

Сдано в набор 18.XI.1985 г. Подписано к печати 7.II.1986 г. Формат 70×100 1/16. ВФ 06537. Бумага офсетная. Гарнитура «норк». Офсетная печать. 2,92 усл. печ. листа, 3,0 уч.-изд. листа. Тираж 69532. Заказ 2550. Цена 15 коп.
Напечатано в типографии изд-ва ЦК КП Армении, пр. Орджоникидзе, 2.

ՎԱՀԱՆ ՍԱՂԱԹԵԼՅԱՆ

# Ժիրայրի նամակները

Նկարը՝ ԽՈՐԵՆ ՀԱԿՈԲՅԱՆԻ

Ժիրայրը բանակային եղբորը շաբաթը մեկ նամակ էր գրում: Պատասխան ըստանար, թե չստանար, շաբաթվա վերջում իր նամակը անպայման պիտի գրեր: Գրում էր մի շնչով, մի բաժակ ջուր խըմելու պես... Գրասեղանի առաջ նստած, հայացքը պատուհանից դուրս, գրչակոթը ատամների արանքում՝ մտածում, սկսում էր. «Ախպեր ջան, ուրեմն...», ու իրենց փոքր գյուղի նշանավոր ու աննշան դեպքերի մասին մանրամասն գրում էր: Գրում ու մտածում էր, որ հայրենիքից հեռու ծառայող տղայի համար իր գյուղի քարի մասին տեղեկությունն էլ հետաքըրքիր կլինի: Եվ եռանդուն ու ջերմ, տաք ու կարոտալի շարադրում էր:

Ուրախ նամակներ էին ստացվում, ուրախ ու թեթև: Եվ շատ կարոտալի. կարոտն ուղղակի բառերից կաթում էր... Ու չէր թաքցնում՝ վերջում այդպես էլ գրում էր. «Մենք շատ լավ ենք, միայն քո կարոտն ենք քաշում»: Եվ ուղարկում էր: Ու երկու-երեք նամակի դիմաց մեկը ստանում. դե, բանակայինի կյանք էր, եղբայրն ինքն իր գլխի տերը չէր, որ նստեր ամեն մի ստացած նամակին մանրամասն պատասխան գրեր, գրում էր՝ ինչքան հասցնում էր: Եվ ամեն մի նամակի մեջ մի երկու խոսքով արդարանում էր նաև. «Չնեղանաս, զորավարժությունների էի, նամակներդ հավաքվել էին»: Ժիրայրը չէր նեղանում, եղբորը հենց այդպես էլ հասկանում էր և, ուրեմն, պատասխան ստանար, թե չստանար, միևնույն է՝ շաբաթվա յոթերորդ օրը սպիտակ թղթի ա-

ռաջ կազմ ու պատրաստ նստած էր:

Եվ գրելիքը չէր պակասում, ասելիք խոսքը չէր պակասում, խոսքաշեն պապի խոսքաշեն թոռ, պուճուր, անաշառ դեպքը ծաղկեցնում, գույն տալիս, մի մեծ պատմություն էր սարքում: «Համա թե փչանն ես, հա՞»,—նամակներից մեկը կարդացել ու քթի տակ խնդացել էր պապը, հետո լրջացել, թոռան մեջքին թփթփացրել, ասել էր. «Պապիդ արյունն է մեջդ` չեղած տեղից էլ բան ես գտնում ասելու»: Ժիրայրն, իհարկե, չեղած բան չէր ասում, եղածը պարզապես գունավորում էր: Իսկ պապի խոսքի վրա ավելի էր ոգևորվել, ոգևորվել ու երևակայության սանձերը բաց էր թողել վերջնականապես. «Ձմեռը... մետրաչափ ձյունը... ռայերն, ուրեմն, խաշխաշի հովտում կալ- մեջ էին արել ձիերի երամակը...»: Վերջը՝ մի արկածային կինո: Եվ Ժիրայրի նամակները հենց այդպես՝ արկածային գրքի պես էլ ընթերցվում էին: Ու գոհ էր Ժիրայրի եղբայրը, և եթե ուրիշ ոչ մեկից էլ նամակ չստանար՝ Ժիրայրի նամակներր նրան բոլ-բոլ էին:

Ձմեռն արդեն քաշվում-գնում էր, հողը զարթնել, տաքացել էր, ձնծաղիկը գլուխը դուրս հանել, արևի տակ տաքանում էր... Եվ հենց այդ օրերին էլ Ժիրայրի նամակները պղտորվեցին՝ տխրությունն ու թախիծը անձրևորդի նման սողոսկեցին-մտան տողերի արանքները:

Եվ ահա թե ինչի համար:

Մ[illegible]կն էր քարի խփել, թե պայտարի [illegible] էր [illegible]վել-մտել մի մեջ (երկու օր առաջ էին պայտել)՝ իրենց ջահել հո-

վատակը անանձկալ ու անսպասելի սկըսեց կաղալ: Առավոտ վեր կացան, տեսան՝ կաղում է: Մտածեցին՝ մեխը երևի խորն է գնացել, ու ձին տարան պայտարի մոտ: Պայտարը ուշադիր նայեց, հիվանդությունից գլուխ չհանող բժշկի նըման մոլոր կանգնեց, մտածեց, ապա քաշեց հին մեխերը, սմբակը խնամքով մաքրեց, թեթևակի տաշեց ու նոր մեխեր խըփեց՝ այս անգամ՝ շատ երեսանց: Եվ իր արած գործը իր մեջ հավանելով՝ ասաց. «Տարեք, եթե մեխերից էր, հիմա էլ չի կաղալու»: Բայց՝ հեչ. խեղճ հայվանը ձեռից գնում էր. մի հսկա ժայռաբեկորից մնացել էր մի բուռ խեղճություն: Արոտավայրում լիներ, թե բակում՝ գերանին կապած՝ արձանի նման ժամերով կկանգներ անշարժ, ու աչքերը միշտ տխուր էին, անփայլ... Արև-աշխարհը կարծես մեկեն խավարեց Ժիրայրի համար. իր ձին, իր պարծանքը, որի մեջքին թռչելն ու արոտավայրում շունչ քաշելը մեկ էր լինում, խեղճացել, երեխայի պես անօգնական տնքում էր:

Եվ, ուրեմն, Ժիրայրի գրած տողերին տխրություն իջավ, ինչպես, ասենք, ամառվա արևի տակ բացված ալ կակաչի թերթիկներին հանկարծակի ձյուն իջնի: Ու Ժիրայրը տխրությամբ գրեց. «Ախպեր ջան, ձին... ձիու ոտքը...», և մի երկար ու տխուր հեքիաթ: Եվ հաջորդ բոլոր նամակներն սկսվում էին ձիու ոտքի մասին մանրամասն տեղեկություններով: Իսկ ձիու կաղությունը օր-օրի սաստկանում էր:

Ձմեռը վերջնականապես փեշերը հավաքեց, գնաց, արևը նայեց պայծառ ու շիտակ, կանաչ ծիլը գետինը պատռեց-դուրս եկավ... Իսկ ձիու կաղությունը չէր անցնում: Արոտ ու հովիտ կանաչել, արևի տակ ժպտում էին, խոտն առատ էր, հյութեղ, բայց ձին համարյա չէր արածում՝ ցավող ոտքը գետնից կտրած, աչքերը կիսախուփ ու տխուր, լուռ ու գլխիկախ՝ ժամերով կանգնում էր: Եվ ժամերով անշարժանում էր նաև Ժիրայրը՝ ծնկները գրկում, ծվարում էր մի քարի ու նայում էր: Եվ ձիու ցավը փոխանցվում էր Ժիրայրին, սիրտը կարծես սեղմվում, ճաք էր տալիս... Պատահում էր, հայրը թամբում էր ձին՝ շտապ գործի համար (եթե ուրիշ հնար չէր լինում), և Ժիրայրը հայացքը փախցնում, քաշվում մի անկյուն, թաքուն լաց էր լինում: Հետո, խաղաղվում ու սպասում էր՝ շաբաթը վերջանա: Եվ ամբողջ շաբաթվա մտքում պահածը, մտքում գրածն ու խմբագրածը խնամքով ու մանրամասն շարադրում էր:

Ու չգիտեր և ինչ իմանար Ժիրայրը, որ իր ցավը ծիծաղ է դառնալու ուրիշների շուրթին... Ստացվեց այնպես, որ ձիու ոտքի պատմությունը անեկդոտ դարձավ եղբոր բանակային ընկերների համար... Սովորություն կար՝ ով նամակ էր ստանում՝ կարդում էր բարձրաձայն: Այն պահից, երբ ձիու ոտքի մասին պատմությունըն սկսվեց՝ տղերքը մի առանձնահատուկ անհամբերությամբ էին սպասում Ժիրայրի նամակներին: Նամակը տեղ էր հասնում թե չէ՝ տղերքը մեղվապարսի պես վրա էին տալիս. «Հը՞, ձիու ոտքի մասին ի՞նչ նորություն կա»: Ու գնա՜ց՝ փորները բռնած կոտորվում էին: Եվ փրկություն չկար նրանց ծաղրից, պրծում չկար նրանց հարցերից: Եվ եղբայրը խորամանկեց. փոստատարին խնդրեց նամակները իրեն տղերքից թաքուն հանձնի: Բայց սատանի ճուտ Գագոն հետքը բռնած որսորդի շան պես այս մի գաղտնիքն էլ ջրի երես հանեց, և բանը հասավ այնտեղ, որ ճարը կտրած եղբայրը պատասխան նամակներից մեկում պահանջեց, որ Ժիրայրը ձիու ոտքի մասին այլևս ոչ մի խոսք չգրի, որ գրի միայն տան և գյուղի նորությունների մասին:

Ու Ժիրայրը եղբոր պահանջի առաջ շվարեց-մնաց: Ձին թանկ ու սիրելի, մարդու պես խելոք, մարդու պես հասկացող, ընտանիքի անդամի նման հարազատ՝ կուչ էր եկել, աչքերի առաջ մոմի պես հալվում էր, իսկ եղբայրը... Ի՞նչ էր եղել, չլինի՞ հեռավորությունը եղբոր սրտից ջնջել էր հին սերերը... Թե չէ՝ ինչ է, չգիտե՞ եղբայրը, որ ինքը առավոտ աչքը բացում՝ միտքը ձիու հետ է, տանում է կապում, օրվա մեջ երկու-երեք անգամ ջրում, տեղփոխ է անում, համարյա ձիու մեջքին է մեծանում, ինքը հիմա ինչպե՞ս աչք փակի նրա ցավի առաջ... Նրա ցավը թողած՝ ուրիշ էլ ինչի՞ մասին գրի Ժիրայրը. Մանուկի դանդալոշի ամուսնությա՞ն, թե՞ Խաչոյի՝ գայլի բաժին դարձած գառների...

Դե, որ ձիու մասին չէր գրելու, գրում էր ահա հենց այդ մասին. «Հա, ուրեմն, գեշ բան եղավ. գայլը կերավ Խաչոյի երեք գառները: Մի օր անընդհատ թոն ե-

կավ, ու սելավը սրբեց-տարավ Անուշի
արտը: Ծաղիկը շատ է, հայրիկն ասում
է, որ մեղրի տարի է լինելու: Մայրիկն
ասում է՝ իրեն թող տաք պահի, ընկեր-
ների հետ հաշտ մնա, ղեկավարության
դեմ լեզու չպտտի: Բարև ունեն տնեցի-
ներն ու դրկիցները»: Եվ նամակը խը-
նամքով ծրարում, ուղարկում էր: Բայց
մի տեսակ՝ պարտքի նման, անկիրք,
անկապ, տողերի արանքում ոչ ցավ կար,
ոչ հրճվանք:

Մայիսի վերջերին ցավը թուլացավ,
ձին ոտքը գետնին դրեց ավելի հա-
մարձակ, առաջվա նման չէր ջլատվում
ոտք փոխելիս, և քայլի ռիթմն էլ կա-
մաց-կամաց կարգավորվում էր… Ու դե-
պի լավը գնաց, քայլելիս հիմա չէր
տանջվում, ոտքի ցավը կարծես իրենն
էր ու, միաժամանակ, իրենը չէր, և քայլ
փոխելիս ոտքը գետնին էր դնում այն-
պես, որ թվում էր՝ վատ սովորությունից
ձեռք քաշողի վարժանքներ է անում: Ու
պնդացան ջլերը, սրունքները լցվեցին
հին ուժով, աչքերի փայլը տեղը եկավ,
մի անգամ էլ վզի պարանը կտրեց ու Ե-
նոքի զամբիկի հետ գնաց հեռու հովիտ-
ները… Գնաց ու մի շաբաթ չերևաց, ու
մի շաբաթ չերևաց նաև Ենոքի զամբի-
կը, և երևի թե թաքստոցների ստվերոտ
ապահովությունից դուրս գային, խոտի
առատությամբ հրապուրվեին՝ սար բարձ-
րանային, եթե Հրայրը ժամանակին լուր
չբերեր, որ ձիերին տեսել է Կեչուտի
հովտում: Եվ Ժիրայրի հայրն ու Ենոքը
ճամփա ընկան: Առավոտ կանուխ գնա-
ցին ու ցերեկվա մոտերքը վերադարձան:
Ձիերը մի քիչ գժություն էին արել, բայց,
ի վերջո, հնազանդվել էին: Ժիրայրը
հերթական նամակն էր գրում եղբորը,
նամակը վերջացրել, կարդում էր, երբ
հայրը եկավ: Ձին զիլ ու երկար խրխըն-
ջաց բակում, ու ձայնի վրա Ժիրայրը
դուրս թռավ տնից: Հայրը մեջքն ուղղեց,
Ժիրայրի կողմը շուռ եկավ, ասաց. «Պա-
րանը դիր վիզը, տար մի տեղ կապի»:
Ու ինքը տուն մտավ:

Ձին կանգնած էր գլուխը բարձր, հա-
յացքը հեռուներին, և նրա հպարտ կեց-
վածքն այդ պահին գեղեցիկ էր: Ձին
դարձյալ խրխնջաց և գյուղի, արտերի,
ձոր ու բլուրների վրայով իր գոյության
լուրը հղեց հեռու հովիտներում խոտ ու
ծաղկի գոլ բուրմունքի մեջ արածող մի
զամբիկի, բայց հովիտներն այլևս դա-
տարկ էին հրաշեկ զամբիկից և իր հա-
մար չէին այլևս: Ժիրայրն արդեն պա-
րան էր կապել նրա վզին և կոճղի վը-
րայից թռավ ձիու մեջքին ու դուրս եկավ
բակից: Եվ երբ գյուղից էլ դուրս եկավ,
նոր միայն հիշեց, որ ձին, ախր, կաղում
էր… Դեռ մի շաբաթ առաջ կաղում էր,
բայց ահա սրունքի ջլերը պարպվել էին
ցավի վերջին գրգիռներից: Երազ չէր ու
իրականություն էր, բայց ասես երազ լի-
ներ, կաղության շորշոփ իսկ չէր զգաց-
վում: Զարմանքն ու հրճվանքը Ժիրայրի
ներսում խառնվեցին իրար: Մելիքի տան
վերևում՝ արտամիջյան արահետի վրա,
խուտուտ տալու նման Ժիրայրը կրնկեց
ձիու կողերին, ու ձին թռավ հին, անմըր-
ցելի այն օրերի գեղեցիկ սլացքով…
Ձիու սլացքի հետ Ժիրայրի սրտին ջեր-
մություն իջավ, հոգին խաղաղվեց… Թա-
փով այդպես հասավ մինչև ձորապռունկ
և արահետի ծնկի վրա ձգեց սանձը: Ձին
տաքացել ու կարծես չէր հնազանդվում,
գլուխը թռել էր վեր, մի տեսակ չհնա-
զանդվելով էր հնազանդվում: Ժիրայրին
դուր էր գալիս ձիու խենթությունը, ձին
փնչացնում ու նետվում էր առաջ, և Ժի-
րայրը ձիու գլուխը դարձյալ բաց թողեց:
Եվ շունչ առավ միայն մեծ տանձենու
մոտ: Ձիու մեջքից ցած թռավ, սանձը
հանեց գլխից, հովտի պես լայն, ընդար-
ձակ թմբի վրա սեպը գետին խրեց ու
սանձը վերցրեց, գնաց, նստեց մի քարի:
Եվ նայում էր: Երկար ժամանակ նայում
էր արածող ձիուն: Հետո վեր կացավ,
տաբատի փոշին թափ տվեց, խոտ ու
ծաղկի բույրի միջով վազեց թումբն ի
վար: Ուրախությունը չէր կարողանում
պահել, շրթունքները խտղտալով ետ էին
գնում, հրճվանքը կրծքի տակ ուռչում
էր… Գյուղ մտավ, գոներով աղբյուրից
ջուր խմեց, հոգնած մշակի նման մեծա-
վարի լվացվեց, մի բուռ ջուր շփեց ի-
րենց դասարանցի Մանանի վրա ու վա-
զեց տուն: Թափով ներս ընկավ, ու
մտքերը անընդհատ ձիու հետ էին, ձին
անընդհատ աչքի առաջն էր: Բաց նա-
մակը սեղանին էր, հայացքը նամակին՝
Ժիրայրը մտածում էր. հարկավոր է գը-
րել… Եվ որոշում ընդունած մարդու թա-
փով գրիչը վերցրեց ու նամակի ամենա-
վերջում մեծ-մեծ տառերով գրեց. «Հա,
ախպեր ջան, իմացած լինես, որ ձիու
կաղությունն անցավ»:

Եվ նամակը ծրարեց ու վազեց փոստ:

ՀՐԱՆՏ ԱԼԵՔՍԱՆՅԱՆ

## Երազը

Երազի դուռը երբեք չի փակվում,
հյուրընկալ տուն է․
մտիր, անծանոթ:
Երազի կանչը երբեք չի մարում․
հավերժի շող է․
բռնիր մանկորեն:
Երազի սիրտը երբեք չի տրտմում․
կապույտ հրճվանք է,—
վերցրեք, մարդիկ․
Ճանապարհներ է երազը երկնում…

## Լույսի պես

Լույսը մեր եղբայրն է․—
Մենք սերում ենք
նույն հավատից՝
լինել անբիծ:

ՓԱՌԱՆՁԵՄ ՎԱՐԴԱՆՅԱՆ

## Գիշեր

Բարդիները կանգնած
Ջինվորների նման
Սոսափում են հանդարտ
Գիշերվա մեջ խաղաղ:

Զարմացել է ասես
Վերում լուսնյակն անքուն,
Որ չեմ քնել և ես,
Որ նստած եմ արթուն:

Ու հարցնում է նա ինձ․
— Բա դու ե՞րբ ես քնում,
— Ես քնում եմ այն ժամ,
Երբ մարդիկ են արթուն:

Գիշերվա մեջ քանի՜
Չար հոգիներ, դևեր
Որոնում են դավի
Հազար-հազար ձևեր:

Մեկը պիտի լինի՛
Կոչնակ զարկի, կանչի,—
Թաքուն դավը չարի
Խափանվի ու կործվի…



Խակ հասկերից ցորենն արտի
Համով, համով աղանձ արել,
Նստած կանաչ արտի եզրին,
Տրորել եմ, անուշ արել,
Քիթ ու բերանս մրոտած,
Չեմ ամաչել ես իմ տեսքից,
Տուն եմ հասել մայրամուտին,
Նորից կպել մորս փեշին:



Թաքնվել եմ արտերի մեջ,
Երգեր երգել արտույտի պես,
Հասկերն են ինձ լսել հեզիկ,
Երգիս վրա՝ հայիլ-մայիլ,
Մորեխները սսկվել են՝
Ամաչել են հանել ծպտուն,
Եվ, կարծում եմ, այսօր էլ դեռ
Ինձ ու իմ երգն են երազում:

ԿԱՐԵՆ ՍԻՄՈՆՅԱՆ

# ԴԵՌ ԱՆԲԱՐԲԱՌ ՄԻ ՄԱՆՈՒԿ...



## Պատկանյանի դպրոցում

Տեր Գաբրիելը դասավանդում էր տանը, որտեղ, բնական է, չկային ոչ դասասենյակներ և ոչ էլ աշակերտական նստարաններ: Բայց գրենական պիտույքների և ցուցադրական գործիքների պակաս չէր զգացվում: Նա, օրինակ, հենց իր ձեռքով մի գլոբուս էր սարքել: Հասարակածային պղնձե օղագոտին և միջօրեականները խնդրել էր, որ պատրաստեն դարբինները, իսկ փորագրությունները կատարել էին ոսկերիչները, որոնց երեխաները սովորում էին դպրոցում: Անհրաժեշտ պիտույքներ սարքում էին նաև աշակերտները, միաժամանակ թե՛ յուրացնելով առարկան և թե՛ վարժվելով ձեռքի հմտության մեջ:

Գաբրիել Պատկանյանին հաջողվել էր մի քանիսին համոզել, որ դպրոցի շենք կառուցելը անհրաժեշտ բան է: Դոնի Նախիջևանի հատուկենտ մտավորականների հորդորներով ու թելադրանքով, նույնիսկ մեկենասներ գտնվեցին, որոնք հանձն առան շինարարության ծախսի մի մասը, եթե, իհարկե, այդ նպատակին տրամադրվեին նաև հասարակական սեփականություն հանդիսացող եկեղեցական գումարները:

Հասարակական այդ գումարները գըտնըվում էին մեծահարուստ Մըկըր աղա Պոպովի տնօրինության տակ: Նա այդ միջոցները օգտագործում էր սեփական առևտուրը և գործարքները ավելի ծավալելու նպատակով, քանի որ հասարակ ժողովուրդը երբեք չէր համարձակվում հաշվետվություն պահանջել, թե իրականում ուր է գնում դրամը:

Բավական էր, որ մեկ-երկու ձայն լսվեր ազգային դպրոց կառուցելու մասին, և Մըկըր աղա Պոպովը այնպես ըմբոստացավ այդ գաղափարի դեմ, այնպես ըմբոստացավ, որ Գաբրիել Պատկանյանը անմիջապես կռահեց, թե ինչ վտանգ կարող է կախվել նույնիսկ տնային դպրոցի վրա:

Մըկըր աղա Պոպովը Դոնի Նախիջևանում հայտնի էր որպես «եվրոպական նիստուկացի» երկրպագու: Իսկ թագավոր-կայսեր ու տերության նկատմամբ հավատարմությունը ցույց տալու նպատակով էլ արդեն փոխել էր իր պապենական ազգանունը:

Նա սկսեց մարդկանց համոզել, որ հայկական դպրոցի շենք կառուցելը իզուր բան է, իսկ երեխաներին էլ հայկական կրթություն տալը՝ անհեռանկար գործ: «Նախիջևանից դուրս գաս, Չալթր գյուղն անցնես՝ հայերեն խոսողն ո՞վ է»,— «խորիմաստ» դատողություններ էր անում հասարակական դրամագլխի պահապանը:

Գաբրիել Պատականյանը զգաց այն վտանգի ամբողջ խորությունը, որ գալիս էր Մըկըր աղա Պոպովից: Ի՞նչ կարող էր անել խեղճ ուսուցիչը... Նա կարող էր միայն պահանջել, որ Մըկըր աղա Պոպովը հաշվետվություն ներկայացնի հասարակությանը: Մի բան, որ մինչ այդ ոչ ոք չէր համարձակվել:

Եվ այս պահանջով խփեց ճիշտ նպատակակետին:

Հասարակական գումարների հարցը Մըկըր աղա Պոպովին անմիջապես շեղեց Գաբրիել Պատկանյանի դեմ կազմակերպված հալածանքից, և նրա դպրոցը շարունակեց գործել, ուսուցչի ձեռք բերած հեղինակության շնորհիվ ավելի ու ավելի համբավ ստանալով քաղաքում:

... Գաբրիել Պատկանյանի աշակերտների մեջ առանձնապես աչքի էր ընկնում, եթե չասենք՝ բոլորից տարբերվում էր, Միքայելը՝ իր խելացի դատողություններով ու սուր մտքով: Նա շատ ընդունակ էր, նաև՝ աշխատասեր, սիրում էր խաղեր հորինել, խաղալիքներ շինել... Մետաղների վրա փորագրություններ էր անում: Մի հին, հղկված հինգկոպեկանոցի վրա, օրինակ, փորագրել էր մի քահանայի պատկեր՝ գինու շիշը դիմացը դրած: Իսկ երբ ուսուցիչը պատմեց շոգեքարշի մասին և ցույց տվեց այդ զարմանալի մեքենայի պատկերը, Միքայելը պատրաստեց գործող մոդել, որը, ինչպես նրա Գայանե քույրն էր պատմում, շարժվում էր առաջ, բայց մի քիչ գնալուց հետո, չգիտես ինչու, կորցնում էր հավասարակշռությունը և պառկում կողքի:

Ուսուցիչը, «տեսնելով իր աշակերտի աչխույժ բնավորությունը, ուշիմությունը և բնաստեղծական շնորհքը, առանձին ուշադրություն դարձրեց նրա վրա և ամենայն ջերմեռանդությամբ ու սիրով պարապեց հետը»,— գրում է Անանատեսը:

Ընդհանրապես, նա իր աշակերտներին շարունակ ներշնչում էր, թե լավ է բոլորովին ուսում չունենալ, քան թերուս լինել, որովհետև ուսում չունեցողը գիտե, որ չունի, հետևաբար՝ պահանջ էլ չունի և համակերպվում է իր վիճակին, իսկ թերուսը իրեն էլ է խաբում, ուրիշներին էլ:

Աշակերտները սիրով էին ուսանում, որովհետև ուսուցիչը կարողանում էր հետաքրքիր դարձնել դասերը, չէր պահանջում անգիր անել և, ընդհակառակը, խրախուսում էր նրանց ինքնուրույն մտածելու, տրամաբանելու փորձերը, ամեն կերպ ջանում էր, որ պատանիները զգան գիտելիքների պահանջը, չբավարարվեն միայն դասավանդվածով և զբաղվեն ինքնազարգացմամբ: Պատկանյանի դպրոցում ընդունված էին հատկապես տնային հանձնարարությունները, որոնք Միքայելը կատարում էր մի առանձին սիրով: Պահպանվել են նրա տնային աշխատանքներից մեկ-երկուսը: Ուսուցիչը հանձնարարել էր բոլորագրով արտագրել հայոց այբուբենը: Հազիվ տասը տարեկան Միքայելը արդեն կարողանում էր օգտվել քանոնից ու կարկինից: Նա մատիտով գրեթե աննշմարելի գծեր էր քաշում, որպեսզի տառերը համաչափ և ուղիղ լինեն, հետո երկու տողի վրա արտագրում էր այբուբենը: Ինչպես պատվիրել էր ուսուցիչը, նույն բոլորագիր տառերով նա գրել էր իրեն առավել սրտամոտ հետևյալ խոսքերը.

«Ոչ ոք առանց պակասութեանց
ծնանի,
Բարին նա է, ով ունի
զպակասութիւնս սակավ»,

այսինքն՝ ոչ ոք չի ծնվում առանց թերու-

թյունների, բայց բարի է նա, ով նվազ թերություններ ունի:

Եվ, քանի որ սիրում էր նկարել, այս ամենի տակ գծագրել էր մի սափոր՝ մեջը ծաղիկներ, ու ներկել գունավոր մատիտներով:

Ժամանակակից գիտության նորագույն նվաճումների մասին և ընդհանրապես գիտության պատմության մասին Միքայելն առաջին անգամ լսեց Գաբրիել Պատկանյանից, որը բազմակողմանի տեղեկություններ էր տալիս իր սաներին այն ամենից, ինչ կատարվում էր աշխարհում: Նա մատչելի ձևով բացատրում էր, թե ինչ բան է մագնիսական դաշտը և էլեկտրական հոսանքը, թե ինչպես կարելի է այդ զարմանալի ուժերի օգնությամբ ստեղծել հեռագրական սարքեր, որոնց շնորհիվ հազարավոր վերստ հեռավորությունից մարդկանց հաջողվում է կարևոր ու անհապաղ լուրեր հաղորդել իրար:

Բայց գիտելիքներ յուրացնելը, գիտակ մարդ լինելը դեռևս չի նշանակում լինել կրթված, առավել ևս չի նշանակում, թե արդեն կարող ես ճանաչել Չարն ու Բարին: Դրա համար հարկավոր է, որ նախ մարդը ճանաչեր ինքն իրեն, որովհետև երբ ցանկություն ունես ճանաչել ինքդ քեզ, ապա դրա հետ միաժամանակ ճանաչում ես քո ժողովրդին ու նրա պատմությունը, որն ընդհանուր մարդկության պատմության անբաժանելի մասն է:

Եվ Միքայելը կլանված լսում էր Պատկանյանի զրույցները՝ քաղած հայ ժողովրդի պատմությունից:

«Մենք մեզ Հայ ենք անվանում Հայկ նահապետի անունով,— պատմում էր Գաբրիել Պատկանյանը:— Իսկ օտարները մեզ կոչում են Արմեն... Մեր պատմությունը ժողովուրդը իմացել է սերնդեսերունդ բանավոր փոխանցված բանաստեղծություններից, վիպասանություններից և երգերից... Մինչև որ Մեսրոպ Մաշտոցը հորինել է հայոց այբուբենը, և այնուհետև պատմահայր Մովսես Խորենացին գրի է առել հայոց պատմությունը՝ սկսած Հայկ Նահապետի ժամանակներից, երբ նա մահու և կենաց կռվի մեջ մտավ Բելի հետ»:

Մեսրոպ Մաշտոց և Մովսես Խորենացի... Միքայելի համար նրանք դարձան անօրինակ սխրանքի ընդունակ մտավորականներ և ճշմարիտ հայրենասերների տիպարներ: Նրանցից առաջինը գիր էր ստեղծել, որպեսզի պահպանվի ժողովրդի ոգին՝ լեզուն, իսկ երկրորդը ժողովրդին վերադարձրել էր նրա պատմությունը, որպեսզի պահպանվի ինքը՝ ժողովուրդը:

«Պատերազմները մեծ մասամբ մղվել են սին փառասիրության կամ էլ աշխարհ և ժողովուրդներ տիրապետելու համար,— շարունակում է Գաբրիել Պատկանյանը:— Ոչ թե Հայկը հարձակվեց այլոց վրա, այլ, երբ օտար բռնակալ Բելը փորձեց ստրկացնել հայերին, Հայկ Նահապետը ելավ նրա դեմ, որպեսզի պաշտպանի յուր անձը, յուր ազգը, յուր երկիրը».— և խոսքն ավարտում էր, ասելով, թե ինքը այս ամենը պատմում է «ոչ թե Հայկին գովաբանելու համար», այլ որովհետև պետք է քաջ գիտենալ ճշմարտությունը:

Ուսուցիչը նաև առաջարկում էր այնպիսի խնդիրներ, որոնց պատասխանը գտնելով, Միքայելը պետք է յուրացներ ապրելու և գործելու ճշմարիտ կերպը:

Հենց, օրինակ, այն հարցը, թե՝ գոյություն ունի՞, արդյոք, տարբերություն մարդկային հավատարմության և կամակատարության միջև:

«Կամակատարը միշտ կատարում է տիրոջ կամքը, թեկուզև այն վնասակար լինի, դեմ լինի բանականությանը: Իսկ հավատարիմը ընդունակ է ընտրություն անել՝ արդյո՞ք հրամանը իրավացի է, արդյո՞ք վայելուչ է կամ օգտակար: Չէ՞ որ հրաման տվողը որքան էլ մեծ ոմն լինի, որպես մարդ՝ կարող է սխալվել»,— բացատրում էր ուսուցիչը:

Եվ այս դասը Միքայելի համար դառնալու էր ճշմարիտ մի ուղեցույց, երբ տարիներ անց՝ արդեն որպես համահայկական հեղափոխության առաջնորդ, պիտի փորձեր ոտքի հանել հայ ժողովրդին միասնական Հայաստանի հանրապետություն ստեղծելու համար: Կամակատար չլինել՝ նշանակում էր ստրկամտորեն չքծնել թագավոր-կայսեր կառավարությանը և ռուս ժողովրդի ազատասիրական ու առաջադիմական գործողություններին նենդաշնակելով, ազատություն, ինքնուրույնություն և առաջադիմություն ապահովել համայն հայության համար:

(շարունակելի)

ԱՐՏԱՇԵՍ ՂԱԶԱՐՅԱՆ

# Հեքիաթ

Այս հեքիաթը մեր պապերն են հյուսել,
Այսօր էլ եկել ու մեզ է հասել։
Ստույգ չգիտենք, ասում են՝ հնում,
Երբ գառը գայլի որջում էր քնում,
Երբ ջուրը առատ, ցամաքը նեղ էր,
Եղջերուները ծառեր են եղել։
Հողմն էր մռնչում՝ ու չէին թեքվում,
Կայծակն էր խփում՝ չէին խորտակվում,
Սակայն ինչ-որ տեղ հատել էր փայտը՝
Հայտնվել էին փայտահատները։
Դե, ի՜նչ, ջուրն՝ առատ, ցամաքը նեղ էր,
Ծառերը խմբվել, խնդիրք են հղել
Հզոր անտառի պահապան ոգուն.
— Փայտահատները մեր ճամփան փակում,
Չեն թողնում շնչենք, չեն թողնում աճենք,
Ազատ, աներկյուղ ճյուղերս ճոճենք։
Փայտահատները չափերը անցել
Եվ պատուհաս են գլխներիս դառել,
Մեզ էլ շարժվելու հնար տուր, մենք էլ
Վտանգի պահին փախչենք անարգել։
Օ՜, բարի ոգի, օգնիր մեզ, գթա,
Լոկ շարժվելն է մեր երազանքը թանկ։
Խնդիրքն այդ բարի ոգին կատարեց
(Չէ՞ որ ծառերի պահանջն արդար էր)․
Թող եղջերուներ դառնան ծառերը,
Վտանգի պահին փախչեն սարերը։

Նկարը՝ ՀՈՎՆԱՆ ԿԱՐԱՊԵՏՅԱՆԻ




## ԻՐԱԿԱՆ, ԲԱՅՑ ԵՎ ՖԱՆՏԱՍՏԻԿ ԹՌԻՉՔ

**Սևան քաղաքը մոտ 150 տարեկան է. քաղաքի պատմության համար կարճ ժամանակամիջոց: Տակավին դարասկզբին Սևանը (հին անունը՝ Ելենովկա) ազգագրագետ Ե. Լալայանի վկայությամբ արդեն ուներ «կանոնավոր, լայն փողոցներ, գեղեցիկ, քարաշեն տներ և բավականաչափ խանութներ ու արհեստանոցներ»:**

**Սակայն Սևանը աներևակայելի թռիչք կատարեց Հոկտեմբերյան հեղափոխությունից հետո: 1930-ին Սևանում կազմակերպվեց հանրապետության առաջին պետական ձըկնարդյունաբերական տնտեսությունը: Իր տընտեսական վիճակը բարելավող հանրապետության համար այն կարևոր նշանակություն ունեցավ: Իսկ ետպատերազմյան տարիներին առավել քան մեծ էր Սևանի հիդրոէլեկտրակայանի նշանակությունը: ՍՍՀՄ-ում առաջին այդ ստորգետնյա հիդրոէլեկտրակայանը շահագործման հանձնվեց 1949 թվականին:**

**Կերպարանափոխումը տեղի ունեցավ մեծ արագությամբ: Միանգամից շարք մտան մի քանի գործարաններ, արտադրական կոմբինատներ ու այլ ձեռնարկություններ: Կառուցվեցին նոր հիվանդանոցներ ու դեղատներ, լճափին՝ հանգստյան տներ, առողջարաններ, տուրիստական հանգրվաններ:**

**Ընդամենը մի քանի տասնյակ տարի առաջ երևի ոչ ոք չէր հավատա, որ փոքրիկ Սևանը կունենա մի քանի միջնակարգ ու ութամյա, երաժշտական, գեղարվեստի, մարզական դպրոցներ, ինդուստրիալ, տեխնոլոգիական տեխնիկում, պրոֆտեխնիկական ուսումնարան, բազմաթիվ նախադպրոցական հիմնարկներ: Իսկ մշակութային պալատի ու կինոթատրոնների մասին նույնիսկ այնքա՜ն լավատես Ե. Լալայանը երևի չէր էլ երազել:**

## ՄԵԿԸ ՉԿԱՐՈՂԱՑԱՎ ԺՊԻՏԸ ՊԱՀԵԼ...

Պիոներտան աշխատողների հետ զրուցելիս մի քանի անգամ շփոթվեցի. տան փոխարեն ասացի պալատ: Մեկը չկարողացավ ժպիտը պահել.

— Պալա՞տ...

Խոսքը քայքայված այն շենքի մասին էր, որը գտնվում է քաղաքի կենտրոնական մասերից մեկում, մի քանի բավական ազդեցիկ տեսք ունեցող շենքերի հարևանությամբ, մի տեսակ կարծես ամոթահար կծկված: Խունացած, կիսով չափ ծեփից զրկված պատերը հենց սկզբից ճնշող տպավորություն են թողնում: Մինչև ներս մտնելը փորձեցի ինձ համոզել, թե գուցե նե՞րսը մի քանի նըման լինի: Ավա՜ղ: Խոնավություն է ամենուր ու ծանր տխրություն բերող ցուրտ: Ինչ գույքի մասին կարող է խոսք լինել: Դաշնամուրը կամ դաշնամուր հիշեցնող արկղը խոնավությունից ինչ-որ տարօրինակ ծղրտոցներ է արձակում: (Մեկը դաժանորեն կատակեց, թե Պագանինիի ջութակի լարերն էլ էին պակաս): Այս շենքը չունի նույնիսկ... սանհանգույց: Ապակիների մի մասը կոտրված է, պատուհանների ներկը ճաքճքվել է, նկուղային հարկերը վերածվել են աղբանոցի...

Խմբակներից ամենագործունը պատանի թղթակիցներինն է, որը պատսպարվել է դպրոցում: Կարունձի խմբակն է մեծ ջանքերով պահպանվում: Կա նաև շախմատի խըմբակ... Հետո՞: Հետո երեխաները քնում են ու երազում տեսնում մի լուսավոր շենք, ճակատին ոսկետառ ցուցանակ. «Սևանի քաղաքային պիոներպալատ»:

Գ. ՄԿՐՏՉՅԱՆ

## ԲԱՐԵԿԱՄՈՒԹՅՈՒՆԸ ՍԱՀՄԱՆՆԵՐ ՉՈՒՆԻ

**Վերջերս Սևանի № 2 միջնակարգ դպրոցը իր հյուրընկալ հարկի տակ ընդունեց Միության 15 հանրապետություններից ժամանած պատվիրակների: Մենք նրանց դիմավորեցինք Շահումյան հրապարակում, որտեղից սկսվեց բարեկամության հանդիսավոր երթը դեպի դպրոց:**

**Իսկ դպրոցում թև առան երգն ու պարը: Իր խրոխտությամբ հյուրերին գրավեց հայկական «Քոչարին»: Եկան, խառնվեցին մեր պարին, և ուս-ուսի տված մեր բարեկամների ժպիտներից կարծես նոր թափ ու եռանդ առավ մեր «Քոչարին»: Սկզբում ամեն մեկը կարծես պարում էր իր ազգային պարը, հետո կամաց-կամաց ներդաշնակվեցին մեր շարժումները: Իսկ մենք գիտենք՝ ով պարում**




*Սևանի պատանի տեխնիկների աշխատանքներից*

է մեր պարը, նա հասկանում է մեզ:

Ելույթ ունեցան նաև մեր հյուրերը: Նրանք խոսում էին տարբեր լեզուներով, բայց մենք էլ էինք հասկանում նրանց, քանի որ բարեկամության լեզուն հասկանալի է բոլորին:

Այժմ մեր դպրոցի աշակերտները նամակագրական սերտ կապերի մեջ են Միության տարբեր հանրապետությունների շուրջ 500 հասակակիցների հետ: Բարեկամությունը սահմաններ չունի:

Այս տարի Սևանի պիոներ-դպրոցականները հանդիպում ունեցան աֆղան ուսանողների հետ: Դա Մոսկվայի երիտասարդության և ուսանողների 12-րդ համաշխարհային փառատոնի արձագանք-ողողանջներից մեկն էր, որ հնչեց Սևանի ափին:

Խաղաղ երեկո էր իջել քաղաքի վրա:

Աֆղան բարեկամները հրապարակ մտան պիոներական թմբուկի համազարկերի, հայկական երաժշտության ուղեկցությամբ:

Հնչում են ավանդական դհոլն ու զուռնան, պարաշրջան են մտել բոլորը: Հայկական «Քոչարին» են պարում աֆղանները: Պարում են այնպես ջերմ ու մտերմիկ, ասես դա իրենց պարը լինի:

Բոլորի համար անակնկալ էր ու անչափ հաճելի աֆղան ժողովրդի զավակ Ամիդա Ծամսի ողջույնի խոսքը հայերեն լեզվով: Նա Հայաստանի արևային գույների, անմոռաց հուշերի հետ մեկտեղ հայրենիք կտանի նաև հայոց լեզուն:

ՆԱՐԻՆԵ ՄԽԻԹԱՐՅԱՆ

## ԱՇԽԱՐՀԸ ԵՎ ՄԵՆՔ

**Սևանի գեղարվեստի մանկական դպրոցում բացված է փնջային հոբելյանական ցուցահանդես, որին մասնակցում են Սևանի ավազանի և Երևանի № 1 ու № 2 արվեստի դպրոցները։ Այստեղ ցուցադրված են թեմատիկ և ժանրային առումով տարբեր 200 գործ։**

**Շատ է նկարում Սևանի գեղարվեստի մանկական դպրոցի սան Արթուր Մանուկյանը։ Նրա ներկայացրած մի քանի տասնյակ գործերից 18-ը իրավունք են ստացել ցուցադրըվելու հանրապետական ցուցահանդեսում։**

**«Խոսում է Մոսկվան»,— այսպիսի անուն ունի նկարներից մեկը, ուր պատկերված է մեզ քաջածանոթ մի տեսարան. փողոցում, ռադիոյի սյան մոտ, կանգնած են թիկունքում մնացած ծերեր, մայրեր, երեխաներ։ Նրանք համակ ուշադրություն դարձած լսում են հաղորդագրությունը։ Ուշագրավ է նաև «Վերադարձ» գործը։ Գնացքը ժամանել է կայարան, պատերազմը ավարտվել է, տուն են դառնում հայրենիքի զինվորները։ Ա. Մանուկյանը հեռվում նկարել է հենակավոր զինվորին, որին իր սպասումով նեցուկ է եղել կինը։ Այս նկարում գերակշռողը կանաչ գույնն է, որը խորհրդանշում է կյանքի հարատևությունը։ Պատերազմի թեմային, ժողովրդի ճակատագրին սերտորեն շաղկապված է Արթուրի «Գաղթը» նկարաշարը։**

**Սմբատ Մարգարյանի նկարները մեզ տեղափոխում են ռազմադաշտ։ Մարտադաշտի թանձր գույները մեզ հուշում են մարտերի ծանրության ու դաժանության մասին։ Նըկարներից մեկում նա պատկերել է խրամատը, որտեղ զինվորներն են՝ պատերազմական օրվա լարվածության մեջ։**

**Իրենց նկարներում երեխաները դատապարտում են պատերազմը և փառաբանում խաղաղությունը, ստեղծագործ աշխատանքը, համերաշխությունը, եղբայրությունը։**

ԿԱՐԻՆԵ ԽԱՌԱՏՅԱՆ

## «ԾԱՌ ՏՆԿԱԾ ԿԱ՞Ս»

Սևանա լճի շրջակա անտառը, եթե լեզու ունենար, շատ կգանգատվեր հյուրերից ու հանգստացողներից։ Անխնա փչացնում են ծառերը։ Այ, օրինակ՝ չիչխանի պտուղները խնամքով հավաքելու փոխարեն կտրում են ճյուղերը՝ տուն տանելու համար։ Այդքանից հետո երկար կյանք կունենա՞, արդյոք, անտառը։ Իսկ այն աղտեղությունները, որ ամռանը թողնում են հանգստացողներն իրենց ետևից, ուղղակի զայրույթ են պատճառում։

Բնությունից ոչ միայն պետք է վերցնել, այլև ինչ-որ բան վերադարձնել նրան։ Եվ իզուր չէ, երբ մարդու և մարդկայինի մասին խոսելիս մեծերն ասում են. «Ծառ տնկած կա՞ս»։



Սևանի ազգային արգելոցին կից ստեղծվել էր «Կանաչ պարեկ» խումբը։ Բայց դըպրոցներից հավաքագրված աշակերտներն ընդամենը մեկ շաբաթ կատարեցին իրենց պարտականությունները, և խումբը կազմալուծվեց։

Հարկավոր է վերականգնել «Կանաչ պարեկ» խումբը։ Հարկավոր է աշխատել ոչ թե հենց այնպես, ձևականորեն, այլ՝ սրտացավությամբ, մտահոգվելով անտառի հետագա ճակատագրով։

ՀՌԻՓՍԻԿ ԵՐՈՅԱՆ

## ԲԱԶՄԱԶԲԱՂՎԱԾՈՒԹՅՈ՞ՒՆ, ԹԵ՞ ԾԱՆՐԱԲԵՌՆՎԱԾՈՒԹՅՈՒՆ

Վերջերս պատանի թղթակիցների խմբակի հերթական պարապմունքի ժամանակ մեզ հարցրին, թե ով ինչ խմբակ է հաճախում։ Պարզվեց, որ որոշ դպրոցներում միևնույն աշակերտները միաժամանակ հաճախում են մի քանի խմբակներ։ Մի՞թե այդ ամենի համար նրանց ժամանակը բավարարում է։ Չէ՞ որ պետք է նաև դաս սովորել և տնային գործերով զբաղվել։ Եվ եթե հարցին ավելի շըրջահայացորեն մոտենանք, կտեսնենք, որ սա բազմազբաղվածություն չէ, այլ ուժից վեր ծանրաբեռնվածություն։

Որոշ դեպքերում էլ ծնողներն են ցանկանում, նույնիսկ՝ պահանջում, որ մենք հաճախենք և՛ երաժշտական, և՛ գեղարվեստի դըպ-





րոցներ, մասնակցենք պայ||  պարապմունք-ներին, սպորտով զբաղվենք, հասարակական ակտիվիստ լինենք, միաժամանակ լավ սովորենք։ Բայց արդյո՞ք հնարավոր է բարեխղճորեն այդ ամենը կատարել։

Ինչպե՞ս վարվել։

ԹԱՄԱՐԱ ԲԱԴԱԼՅԱՆ

## ԿԱՐԱՊՆԵՐԸ ԿՎԵՐԱԴԱՌՆԱ՞Ն

**Նրանք չգիտեին, թե որտեղից հայտնվեցին կարապները։ Որտեղից էլ որ հայտնված լինեին, միևնույն է, տղաները ամեն օր դասերից հետո գնում էին նրանց կերակրելու։ Մի օր էլ լճափին կրակոց լսվեց։ Կարապները տագնապահար թռան, նրանցից մեկը մնաց։ Կրակողին գտնել չհաջողվեց։ Տղաները ըսպանված կարապը ձեռքերին մտան Չկալովկայի գյուղական սովետի գործկոմ։ Կարապների պահպանության գործը այդ օրից ստանձնեցին «Սևան» ազգային արգելոցը, որսորդմիությունը, միլիցիան։**

**Հյուրերին կերակրելը անհնար էր իրագործել առանց ուղղաթիռի։ Ուղղաթիռը կամոյում էր, և մեր մեքենան սառցափոսերի վրա ոստոստալով գնում էր Կամո։**

**— Մեզ մոտ 20—80-ական թվականներին կարապներ եղել են, հատկապես Գիլլի լճի ճահճուտներում,— ճանապարհին պատմում է «Սևան» ազգային արգելոցի տնօրեն ընկ. Գ. Սուխուդյանը,— հետո ճահճուտները չորացրին և հողը օգտագործեցին գյուղատընտեսական նպատակների համար։ Դրա հետ վերացան նաև կարապները։**

**— Միթե ա՞յդ պատճառով,— հարցրի ես։**

**— Թերևս ազդել էր նաև մարդկանց վերաբերմունքը։ Կարապները մեզ պետք է հավատան, այնպիսի վերաբերմունք պետք է ցույց տանք, որ հյուր եկածները մնան, այլևս չգնան։**

**Սևանը հազվադեպ է սառչում։ Կարապնե-**



րի երևալը բացատրվում է նաև դրանով։ Բայց այդ տարի լիճը սառցակալվեց։ Հարկավոր էր փրկել կարապներին։ Դժվարությունն այն էր, որ կարապների տեղավայրերը շատացել էին։ Նրանք հավաքվում էին լճափերին, Այրիվանքի, Գավառագետի, Նորադուզի, Ձկնագետի և այլ շրջաններում։ Սևանում արդեն 500-ից ավելի կարապներ էին հաշվվում։

Ուղղաթիռը բարձրացավ օդ։ Քիչ հետո օդաչուներից մեկը ձայնեց.

— Ահա՛, նայեցե՛ք։

Եվ մենք տեսանք կարապների մի խումբ։ Հաշվեցինք՝ 81 հատ էին։ Նրանցից մի քանիսը ընկած էին ձյուների մեջ։ Կերի պակասը ուժասպառ էր արել, և թռչելու ուժ չունեին։ Ուղղաթիռի դռնակը բացվեց, և գարով լի պարկերը մեկը մյուսի հետևից թափվեցին ներքև։ Պարկերը թրմփոցով բացվում էին կարապների կողքին։ Սկզբում նրանք վախեցան, նետվեցին այս ու այն կողմ, հետո ըզգալով կերի մոտիկությունը, սկսեցին մոտենալ գարու պարկերին։

Միայն այդ օրը մեկ տոննա կեր բաշխվեց։

— Մի ուղղերթը կերի հետ միասին 700 ռուբլի արժե,— ասաց Գ. Սուխուդյանը,—շաբաթական այդպիսի երկու ուղերթ ենք կատարում։

Ամիսներն անցնում էին, բայց Սևանի ձըմռանը կարծես վերջ չկար։ Բոլոր կարապներին դժվար էր հայտնաբերել։ Ուժասպառները մոտենում էին ափերին։ Կարծես սկսել էին վստահել մարդկանց։ Մարդիկ նրանց բերում էին «Սևան» ազգային արգելոց։ Իսկ այդտեղից տեղափոխում էին Երևանի կենդանաբանական այգի։ Սառույցների վրա կարապները երբեմն ջարդվածքներ էին ստանում։ Մի անգամ դահուկային արշավի եկած տղաները լսեցին կարապի աղեկտուր ճիչը։ Մոտեցան։ Կարապներից մեկը ընկած էր սառույցների վրա՝ ջարդված ոտքից արյուն էր ծորում, իսկ ընկերը խելահեղ պտույտներ էր անում նրա գլխավերևում ու տագնապահար ճչում։

Տղաները բերեցին տուն։ Կապեցին ոտքը, հետո հանձնեցին ազգային արգելոց։

Եկավ գարունը, և կարապները չվեցին։ Մնացին միայն նրանք, որոնք ջարդվածքներ ունեին, և մշտական բնակություն հաստատեցին Մարտունու շրջանի Լիճք գյուղում։

Իսկ այն կարապները, որոնք չվեցին, կըվերադառնա՞ն։ Հավանաբար կգան, քանի որ մարդիկ նրանց վստահություն են ներշնչել։

ՆՈՎԻԿ ԴԱՐԲԻՆՅԱՆ

## ՍՏԵՂԾԱԳՈՐԾՈՒՄ ԵՆ

### Ձյունը

Ամբողջ գիշեր ձյուն է եկել
Ու նորից ձյուն է իջնում,
Այնպես հանդարտ, այնպես սիրուն,
Հեզիկ-նազիկ ցած սահում։
Դեմքս հպած պատուհանին՝
Մտածում եմ ինքս ինձ.
Արդյոք նորից գարուն կգա՞
Այսքան ձյունի ետևից։

ԼՈՒՍԻՆԵ ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ
Պուշկինի անվ. դպրոց,
8-րդ դասարան



ՂԱԶԱՐՅԱՆ ՄՀԵՐ, Երևան, 15 տ.
*(Ինքնանկարի մրցույթ)*

# Լիճը

Գեղեցիկ է լիճը, եթե նայես նրան կեսգիշերին,
Երբ լուսինն է շրջապատված
Պայծառ-պայծառ կամ էլ մեղմիկ
Ծողարձակմամբ աստղիկների,
Որ երկնքի սեղաններին
Ծարվում են լուռ մոմերի պես:

Եվ ջրերն են գնում-գալիս,
Հարցականներն առօրեական ափ շպրտում,
Եվ լսվում է լճից ելնող ճովի սույլը
Կղզու խորքում:
Գեղեցիկ է լիճը, եթե նայես նրան կեսգիշերին:

ԿԱՐԻՆԵ ԴԱՐԲԻՆՅԱՆ
Երևան, 169 դպրոց, 7-րդ դասարան



«ՀԱՆԴԻՍԱՏԵՍՆԵՐ», ԷԼՄԻՐԱ ԱԴԱՄՅԱՆ, 14 տ. Մարտունու շրջ., գ. Մադինա

ԹԱԴԵՎՈՍ ՏՈՆՈՅԱՆ

# Արահետ

Գիշեր էր խոր, գիշեր էր մութ,
Բայց բացատում յոթ գույների,
Լույսի կապույտ-կապույտ ծոցում,
Մուշ-մուշ, անուշ քնած էի,
Երբ ականջիս հանկարծ կարծես
Տաքուկ խոսքեր շշնջացին,
Թե՝ ել, ի՞նչ ես անհոգ քնել,
Ծաղիկներ են այսօր զարթնել.
Փնջեր կազմիր ու նվիրիր
Մայրիկներին,
Տատիկներին,
Քույրիկներին:
Այդ խոսքերի շնչից ջերմիկ
Լուսատտիկներ փայլեցին,
Նրանց փափուկ արձագանքից
Ծլնգացին բյուր զանգակներ:
Ես վեր ելա, սակայն հանկարծ
Ծաղիկները թիթեռնիկներ դարձան թևող
Ու ճախրեցին լույս գիշերվա
Յոթ գույների արահետով:
... Ու վազեցի լույս հետքերով
Ես այդ թռչող ծաղիկների,
Հազար լուսե բացատ անցա,
Հազար կամուրջ ծիածանի,
Ինչքա՜ն, ինչքա՜ն շատ վազեցի,
Մինչև հոգնած՝ պայծառ մի օր
Տեսա ճամփին մի ծերուկի՝
Երկա՜ր-երկար իր մորուքով:
Նա էլ շատ էր հոգնած, անո՜ւժ,
Ես մոտեցա հուշիկ նրան.
Հոնգո՜ւր-հոնգո՜ւր,
Հոնգո՜ւր-հոնգո՜ւր
Արտասվում էր մանկան նման:
Ասի՝ պապի, ի՞նչ ես լալիս,
Ասաց՝ արդեն քանի՜ տարի
Վազ եմ տալիս ետևներից
Ես այն թռչող ծաղիկների,
Հազար լուսե բացատ անցա,
Հազար կամուրջ ծիածանի,
Որ ծաղկեփունջ կազմած տանեմ
Իմ մայրիկին
Ու տատիկին
Եվ քույրիկին ես ընծայեմ:
Ասի՝ պապի, լաց մի լինի,
Հանգիստ նստիր, ինձ սպասիր,
Ես կբռնեմ այն թևառած
Ծաղիկները՝ թիթեռ դարձած,
Դու կընծայես քո մայրիկին,
Քո տատիկին
Ու քույրիկին,
Ես կընծայեմ իմ մայրիկին,
Իմ տատիկին

Ու քույրիկին։
Եվ ես կրկին ճամփա ելա
Ու վազեցի, շա՜տ վազեցի,
Նորից հազար բացատ անցա,
Հազար կամուրջ ծիածանի,
Ու շատ անգամ աստղերն ընկնող
Ինձ թիթեռներ երևացին։
Ու վազեցի՜, շա՜տ վազեցի,
Այնքան, մինչև կամաց-կամաց
Իմ մազերն էլ ճերմակեցին,
Ես էլ հոգնած վայր ընկա ցած,
Ու երբ այդպես ընկած էի,
Մի անգամ էլ իմ ականջին
Կախարդակա՜ն, հեքիաթային,
Տաքուկ խոսքեր շշնջացին,
Լուսատտիկներ փայլեցին,
Ծլնգացին բյուր զանգակներ,
Թիթեռներն էլ հանկարծ դարձան
Հեռու-հեռու, անհաս աստղեր։
Ու ես արդեն ծե՜ր, ալեհեր՝
Անհույս-անհույս արտասվեցի,
Ախր, ոչ մի, ոչ մի ծաղիկ,
Ոչ մի ծաղիկ դեռ չունեի,
Ու կողքովս էլ՝ թիթեռներին աչքը հառած՝
Վազեց-անցավ մի սիրունիկ,
Երազի աշխարհում պատանեկիկ։



Նկարը՝ ՄԻՀՐԱՆ ՔԵՉՕՂԼՅԱՆԻ



**ԱԶԱՏ ԵՂԻԱԶԱՐՅԱՆ**

# Հայրենների վառվռուն աշխարհը

**Այս աստընտրիս վերայ, դու մատնի, ես ակն ի վերայ.**
**Դոր որ պաղ աղբիւր մի կայ, դու կանաչ, ես ցողն ի վերայ,**
**Խընծոր ես ծառի ճըղին, ես կանաչ թփիկն ի վերայ.**
**Վախեմ, թէ աշունըն գայ, զքեզ քաղեն, թուփըս չորանայ:**

(Այս աշխարհում դու մատանի, ես՝ նրա վրայի ակը,
Որտեղ մի սառն աղբյուր կա, դու կանաչ ես, ես՝ նրա վրայի ցողը,
Դու խնձոր ես ծառի ճյուղին, ես՝ նրա վրայի կանաչ տերևը,
Վախենում եմ՝ աշունը գա, քեզ քաղեն, տերևս չորանա):

Սա մեկն է միջնադարյան քնարական բանաստեղծությունների այն հրաշալի փնջից, որոնք մեզ են հասել Նահապետ Քուչակի անունով և կոչվում են հայրեններ («հայրեն» նշանակում է «հայերեն», նաև՝ «հայրենի», այսինքն՝ բանաստեղծական ձևի անվանումը ընդգծում է նրա բուն հայկական ծագումը):

Ուշադիր կարդացեք քառյակը: Այսքան շատ, պարզ և միաժամանակ այսքան տպավորիչ համեմատությունների չեք հանդիպի ո՛չ հայրեններից առաջ, ո՛չ էլ հետո: Ինչքան էլ հարուստ է մեր միջնադարյան քնարերգությունը, այնուամենայնիվ, հայրենները առանձնանում են՝ փայլելով թանկագին քարերի կամ, ավելի ճիշտ, անմահական բազմագույն ծաղիկների պես: Սիրային բանաստեղծությունը զարգանում էր, ինչպես գիտենք, Կոստանդին Երզնկացու ժամանակներից սկսած: Այնպես որ, թեման արդեն նորություն չէր: Բայց բանաստեղծական խոսքի որակը նորություն էր: Քնարական այս հերոսը իր շրջապատից հիշում է հազար ու մի առարկա: Նա ամեն օր տեսնում է և՛ խնձորն ու կանաչ տերևը, և՛ խոտի շյուղն ու նրա վրայի ցողի կաթիլը, և՛ մատանին ու նրա վրայի թանկագին քարը: Զգում է ոչ միայն դրանց գեղեցկությունը, այլև տեսնում է նրանց ներքին կապը: Սա մարդու և աշխարհի հարաբերության նոր որակ է: Այսպիսի հերոսը ընդունակ է ոչ միայն խոր զգացմունքների, այլև լիաբուռն ըմբոշխնում է կյանքը իր բոլոր արտահայտություններով: Եվ երբ ուզում է իր զգացմունքն արտահայտել, այդ անում է առանց վերացական խոսքերի ու դատողությունների: Մինչև հայրենները հայ քնարական բանաստեղծության մեջ դեռ երբեք աշխարհը այսքան շոշափելի չէր ներկայացվել, այսպես չէր փայլել իր բազմապիսի գույներով ու ձևերով:

Առհասարակ, հայրեններում գեղարվեստական պատկերավորության միջոցներից նախապատվությունը տրվել է համեմատությանը և ապա՝ մակդիրին: Հենց

համեմատությունների միջոցով են բանաստեղծության ոլորտը խուժում բնությունն ու մարդու ստեղծածը. Բառը չի կորցնում իր ուղղակի, նյութական իմաստը, փոխաբերական նշանակություններ այստեղ գրեթե չկան: Երբ ասում է «Դոր որ պաղ աղբիւր մի կա, դո կանանչ, ես ցօղն ի վերայ», ապա մեզ ստիպում է տեսնել հենց պաղ աղբյուրը, նրա կողքին աճած խոտն ու ցողի կաթիլը: Այստեղ մի անգամ ևս չի կարելի չնկատել, թե լիրիկական հերոսը ինչքան լավ է զգում բնությունը. չէ՞ որ դա իսկապես աննման պատկեր է՝ աղբյուրի մաքուր ջուրը, նրա շուրջ եղած զմրուխտ կանաչը, խոտի շյուղին փայլող ցողի կաթիլը... Բայց այս համեմատությունների մեջ միայն բնության պատկերները չեն կարևորը: Համեմատվող առարկաները ընտրված են գեղարվեստական նուրբ տրամաբանությամբ: Համեմատության համար ընտրված առարկաները զարդարում, լրացնում են մեկը մյուսին: Մի ուրիշ քառյակում պատանին իրեն ու սիրածին համեմատում է աչքի ու նրա լույսի, ձկան ու ջրի հետ և ապա ասում. «Երբ զձուկն ի ջրէն հանեն ւ՛ ի այլ ջուր ձգեն, նա ապրի, Երբ զիս ի քենէ զատեն, քան զմեռնիլն այլ ճար չի լինի»: Ահա այսպես՝ նուրբ ու թեթև, նա զարմանքով և ուրախությամբ ներկայացնում է սիրածի գեղեցկությունը աշխարհի գեղեցկությանը ներդաշնակ:

**Մտիկ իմ եարին արէք. զինչ հագեր՝ ամէնն է կանանչ.**
**Հագեր գոյնզգոյն կապայ, կոճակն ու օղակն է կանանչ.**
**Առեր ու պաղչան մտեր, ջուր կերթա՝ եզերն է կանանչ.**
**Մտիկ ծառերուն արէք, ծառն ծաղկեր՝ տերևն է կանանչ:**

Գեղեցիկ է աշխարհը, գեղեցիկ է ծաղկած բնությունը, և գեղեցիկ կինը այդ կանաչ աշխարհի մի մասնիկն է: Դեռ նախորդ քառյակում զգացվում էր առանձնահատուկ սեր կանաչ գույնի նկատմամբ, որ երիտասարդության, գարնան գույնն է: Բայց կանաչ գույնը միակ գույնը չէ հայրեններում: Հայրենների ստեղծողները առհասարակ շատ ուշադիր են գույների նկատմամբ՝ թուխ ամպ, ճերմակ ու կարմիր երես, կարմրիկ խնձոր, ոսկեթել ծածկոց և այլն: Մի անգամ ևս ուշադրություն դարձրեք, թե քառյակի տողերն ինչքան պարզ են, բանաստեղծական սովորական զարդարանքներ այստեղ գրեթե չկան: Պարզությունը, ինչպես գիտենք, ընդհանրապես հատուկ է ժողովրդական խոսքին, ժողովրդական բանաստեղծությանը (որի արտահայտություններից մեկը հայրեններն են): Բայց հայրենների պարզությունը շատ գունեղ է, տոնական երանգ ունեցող: Հայրենների ստեղծողներին աշխարհը ներկայանում է իր նախաստեղծ վառ գույներով: Դրա համար էլ հայրենների մեծ մասին հատուկ է մի ընդհանուր լուսավոր, պայծառ տրամադրություն: Հայրեններում, իհարկե, ոչ միայն երջանիկ, այլև մերժված սիրո, հայրենիքի ու պանդխտության մասին է խոսվում: Բայց բնության պատկերներն ու գույները մեղմացնում են ծանր ապրումները: Եվ արդեն քանի դար հայրենների այդ պայծառ գույները չեն խամրում:



ՎԱԼՏԵՐ ԱՐԱՄՅԱՆ

# Որսորդի օրագրից

Նկարը՝ ՍԱՐԳԻՍ ՄԿՐՏՉՅԱՆԻ

Դեռ լույսը չէր բացվել, դուրս եկա իմ գերանակապ տնակից և քայլերս ուղղեցի դեպի Մյակիտ և Բույունդա լեռնային գետերի խառնարանը: Ես էլ սկյուռների նման մթության մեջ զգում էի լուսաբացի մոտիկությունը, զգում էի օդի անսովոր թարմությունից տայգայի, ճիշտ է, կարճատև, բայց խորհրդավոր լռությունից:

Նոր էի մոտեցել մեծ գետերի խառնարանին, երբ լույսը սկսեց բացվել: Լեռնցու բնազդով կանգ առա հավիտենապես ձյունածածկ լեռների առջև՝ լուսաբացը ողջունելու, և հենց այդ պահին ոտքերիս տակ ընկավ խփված մի կենդանի, նայեցի՝ սկյուռիկ էր, աչքից արյուն էր կաթում: Տագնապով շուրջըս նայեցի և տեսա թփուտների մեջ պպզած չունկչի որսորդին: Փոքրահասակ էր որսորդը, կլոր դեմքի դեղին սառնությունը մատնում էր, որ որսորդը երիտասարդ չէ: Նրա դիմաց, մի մեծ ծառի վա, հավաքված էին սկյուռները և անհանգիստ սվսվոցով ինչ-որ բան էին դիտում ծառի տակ, ինչ-որ բան հրապուրում և անհանգստացնում էր նրանց, նրանք իրար հրելով իջնում էին ծառի վերին ճյուղերից, խռնվում ցածի ճյուղերին և հասած տանձերի նման մեկ-մեկ ընկնում էին ծառից ու անշընչանում: Ծառի տակ փայլատակում էր պըսպըղուն մի բան. հետո իմացա, որ այդ պըսպըղուն բանը խայծ էր, չունկչին դրել էր հարկավոր տեղում սկյուռներին խաբելու համար: Հետաքրքրասեր կենդանիները աչքերը չռած նայում էին այդ փայլին և, գերված նրանով՝ չէին նկատում չունկչի որսորդին, որը պպզած թփուտների մեջ, անձայն, կոտորակային հրացանը ձեռքին՝ խփում էր: Սկյուռների աչքերը նման են մարդկանց աչքերին՝ փափուկ, խելացի հայացք ունեն, բարի են, հավատ և ջերմություն կա նրանց աչքերում, գիշատիչ գազանների աչքերի նման երկչոտ և խուսափող չեն: Եվ ահա, որսորդը նստած թփուտների մեջ նշան է բռնում խեղճ կենդանու զարմանքից լայն բացված աչքին և մեկ հատ կապարից պատրաստած կոտորակը խփում է անվրեպ, ուղղակի աչքին: Ես մոտեցա նրան, և մենք նստեցինք ընկած ծառի բնին:

— Աչքը կենդանիների ուղեղի այն մասն է, որը դուրս է եկել գանգի միջից աշխարհը տեսնելու համար,— ասաց նա:— Աչքին խըփել՝ նշանակում է խփել անպաշտպան ուղեղին. կենդանին մեռնում է մեկ ակնթարթում, մահվան սարսափը չի զգում, ես չեմ կարողանում տեսնել հոգեվարքի մեջ տանջվող կենդանուն, իմ գնդակից նա այնպես է մեռնում, ինչպես ծնվում է, ոչինչ, բացարձակապես ոչինչ չի զգում: Մեկ ակնթարթ է միայն կյանքից մահվանն անցնելու ժամանակը: Բացի այդ, ես ընտրում եմ արդեն հասունացած սկյուռներին, ծերացած և երիտասարդ սկյուռներին չեմ խփում, նրանց մորթին լավը չէ: Սկյուռները, եղբորս ասեմ, երկար չեն ապրում, նրանք լավ սնունդ են գիշատիչների համար: Դու կերե՞լ ես սկյուռի միս, համով է, վատը չէ... Ոչինչ հավիտենական չէ այս աշխարհում՝ այս տայգան, այս լեռները, այս ջրերը: Սկյուռի համար կյանքն իմաստ չունի, նա բնազդով է ապրում, նա կարող է նաև չապրել: Նա ոչինչ չի գիտակցում, ոչնչի ձգտում չունի, նա նույնիսկ չգիտե՝ ապրում է, թե չի ապրում, իսկ ես մարդ եմ, ես գիտակցություն ունեմ, իմ ապրելը իմաստ ունի: Երեխաներ ունեմ, նրանց պիտի պահեմ, մեծացնեմ, տաք մորթիներ հագցնեմ, որ չսառչեն սառնամանիքներում, իսկ տաք մորթիները գտնվում են գազանների և կենդանիների վրա: Նրանց վրայից պետք է հանեմ, հագցնեմ իմ երեխաներին, իսկ նրանց վրայից հանելու համար պետք է նրանց սպանեմ: Հիմա ես հենց այդ էլ անում եմ: Իմ այսօրվա որսորդության մեջ մի խարդախություն կա, այդ էլ դու ինձ պետք է ներես, խարդախությունն այն է, որ ես խայծ եմ դրել, խաբում եմ սկյուռներին, զրկում եմ նրանց պաշտպանության հնարավորություններից, մի բան, որ մեր երկրում տայգայի օրենքով պատժվում է խստությամբ: Հույս ունեմ, որ դու այդ բանը չնկատեցիր, չտեսար և ոչ ոքի չես ասի: Երեխաներիս համար ամենահարմար մորթիները սկյուռների մորթին է՝ թեթև է, տաք և գեղեցիկ է, հեշտությամբ է մշակվում: Ես հայր եմ և պարտավոր եմ երեխաներիս կարիքները հոգալ, ես մարդ եմ և կարող եմ այդ անել, խելք ունեմ և գիտեմ, թե ինչպես պետք է անեմ:

— Ապրել բոլորն են ուզում,— ասաց նա և այնպիսի մի թեք հայացք գցեց վրաս, որ մարմինս փշաքաղվեց, սարսուռ զգացի, բընազդաբար ձեռքս տարա հրացանիս փականակին: Սկյուռները շարունակում էին նայել մեզ: Չուկչին հանկարծ վեր թռավ տեղից, մեծ արագությամբ հավաքեց խփված սկյուռները, վերցրեց փայլուն խայծը, գցեց կաշվե պարկի մեջ և առանց հրաժեշտ տալու մտավ թփուտների մեջ, անհետացավ:

Մեզ մոտ, հարավում, կենդանիները ծերություն չեն հասնում: Իրենց մահով մեռնում են միայն էշերը: Ո՞վ է տեսել, օրինակ, տասը տարեկան մի հավ: Ծերացած ոչխար, ճնճղուկ, աղավնի: Այդ չի լինում, բայց այստեղ, տայգայում, երևի լինում է: Ես ասում եմ՝ երևի, որովհետև ստույգ չգիտեմ, բայց մեկ անգամ տեսել եմ զառամյալ մի աղվես, ծերացած մի նապաստակ, նաև՝ ծերացած սկյուռներ, այս վերջիններիս համար ծերությունն իսկական տանջանք է:

Անցնում էի հաստաբուն կեչիների մոտով, փտախտի հոտ զգացի, արահետից դուրս եկա, բայց շուտով նորից վերադարձա, նոր արահետն ինձ ոչ մի տեղ չէր տանում: Փըտախտի հոտը գալիս էր մի հին փչակից, մոտեցա, փչակից գլուխը հանեց ծերացած մի սկյուռ: Նրա ճպռոտ աչքերը լիքն էին արցունքներով, կմախքացած բերանի խոռոչից դուրս էին եկել թեքված, դեղին ատամները, մաշկի վրա մազ չէր մնացել, չքնաղ պոչին մի մազն ինչ է՝ չկար: Նա այնպես նայեց ինձ, որ ես հասկացա՝ փչակից դուրս գալ էր ուզում: Երկու ձեռքով այնպես խնամքով բռնեցի, որ ոչ մի տեղը չցավեցնեմ, հանեցի փչակից ու դրեցի մամուռի վրա: Սկյուռը մարդու նման նայեց, ես չհեռացա նրանից, նա խաղաղ էր, ինչպես տնային կենդանին, առանց վախի կանգնել, ուղղում էր մարմնի հոգնած մասերը և անընդհատ նայում էր ինձ: Երբ հոգաց իր կարիքները, մոտեցավ ինձ, և ես հասկացա, որ խնդրում է, որպեսզի իրեն նորից բույնը դնեմ: Ես այդպես էլ արեցի:

Գարնանը, երբ ձկները մեծ վտառներով դուրս էին գալիս խոր ջրերից և դեպի թարմ ջրերն էին շտապում աղբյուրների ակունքներում ձվադրության համար, ես Մայունջա գետակի ափին մի սապատավոր ձուկ բռնեցի, ուզում էի տոպրակիս մեջ գցել, բայց անմիջապես չկարողացա, մի պահ ինձ թվաց, թե նա հասկանում է, որ արդեն իր վերջն է եկել և մեռնել չի ցանկանում, այնպես թպըրտաց ու մեծ ուժով դուրս պրծավ իմ ձեռքից:



Բաց թողեցի, և նա անմիջապես ջուրն ընկավ: Ես նույնիսկ տեսա պարզ ջրում, թե ինչպես նա լողաց ջրի հոսանքի դեմ, ուրեմն ապրելու էր, ապրել էր ուզում, միայն սատկած ձկներն են գնում ջրի հոսանքի հետ:

Ես տուն էի դառնում և չգիտեմ ինչու ըշտապում էի: Տայգայում այդպես շտապել չի կարելի, այստեղ գործում են բնության անփոփոխ օրենքները: Շտապելն այստեղ նըման է փախուստի, վախի, իսկ փախուստն ու վախը տայգայում մահացու հանցանք է: Իմ տայգաբնակ ընկերներից մեկը շատ էր ցանկանում, որ ես ճիշտ հասկանամ այդ բոլորը.

— Չի կարելի,— կրկնում էր նա,— երբ մարդը վախենում է, նրա մարմնից սուր հոտ է գալիս, որը մատնում է նրա վախը, և գազանը քաջալերված անմիջապես սկսում է հետապնդումը:

Կենդանիների մեջ ես չեմ սիրում օձերին, կարիճներին և գայլերին, նրա համար, որ օձերն ու կարիճները նենգ են, իսկ գայլերը՝ ագահ: Ես մեկ անգամ աչքովս տեսա, թե ինչպես էր գայլը հոշոտում իր զոհին: Նրա արնաթաթախ երախը, ոչինչ չնկատող պղտոր հայացքը, անզուսպ ագահությունը զայրույթ առաջացրին իմ մեջ, և ես կրակեցի ու սպանեցի նրան առանց որևէ անհրաժեշտության: Մի խոսքով՝ տայգայում մարդու թշնամիներն են վախը, շտապողականությունը, սառնամանիքներն ու ցինգան: Գազաններից ինձ համար ամենասիրելին արջն էր, նրանից չէի վախենում, երևի ռուսական հեքիաթների թողած տպավորության պատճառով, բայց մի օր վախեցա, երբ տեսա նրան բնության մեջ, ահագին, սարսափելի ու դաժան, կրկեսներում և գազանանոցներում տեսած մեր արջերը արջեր չեն, արջը արջ է ազատ բնության մեջ:

Շատ շուտ վերջացան տաք օրերը: Նորից բուքն ու բորանը, սառնամանիքները, կատաղի հողմերն ու բևեռային գիշերները դարձան տայգայի տերերը, շունչն ու ոգին: Օդը կարծրացել էր, զրնգում էր մետաղի նըման: Քայլում էի Եվրաշկալա գետակի սառած հունով: Ծառի տակ ձյունից էլ ճերմակ մի գունդ տեսա: Նապաստակ էր, պպզած էր ծառի տակ, մոտեցա և ինքս էլ պպզեցի նրա դիմաց: Նա նայում էր ինձ պլշած աչքերով, կենդանի, իսկական նապաստակ էր, բռնեցի ցցված ականջներից և պարկս գցեցի: Երբ տուն վերադարձա, բաց թողեցի սենյակիս մեջ: Առավոտը քնից արթնանալով, ծանր հոտ զգացի, դուրս եկա անկողնուց և տեսա, որ նապաստակը նստած է նույն այն դիրքով, ինչ դիրքում որ թողել էի քնելուցս առաջ: Ես արդեն գիտեի, որ կենդանիները նույնպես հիվանդանում են ցինգա հիվանդությամբ, բայց դեռ հիվանդացած կենդանի չէի տեսել:

Այս հիվանդությունը հայերեն կոչվում է լնդախտ, ռուսերեն՝ ցինգա, լատիներեն՝ սկորբուտ: Հիվանդության հայերեն անվանումը խիստ պակասավոր է: Այդ անունը ոչինչ չի ասում բուն հիվանդության մասին: Ցինգան լնդերի հիվանդություն չէ: Վիտամինների բացարձակ բացակայության հետևանքով ախտահարվում է կենդանի օրգանիզմի ողջ կազմվածքը, առաջին հերթին՝ նյարդային համակարգը: Հիվանդության նախանշանները երևում են բավականին շուտ՝ քնկոտություն, աշխատանքի ունակության կորուստ, հիշողության թուլացում, ախորժակի բացակայություն, ծարավի մշտական զգացում, որի հետևանքով այնքան շատ ջուր է խմում, որ ուռչում, փքվում, կորցնում է մարդկային կերպարանքը, քայլել, իհարկե, չի սիրում, չի կարողանում, անվերջ քնել է ուզում: Եթե արթնացնող չլինի, այդպես էլ չի արթնանա: Հիվանդության զարգացման փուլերից մեկում առաջանում են թարախոտ վերքեր մկանների մեջ, և այնպիսի գարշելի հոտ են արձակում այդ վերքերը, որ դիմանալը դժվար է: Այդպիսի հիվանդներին սովորաբար մեկուսացնում են: Վերքերը խորանում են մինչև ոսկորները, և գալիս է հիվանդության այն շրջանը, երբ հիվանդը ջերմության զգացում չի ունենում: Ես տեսել եմ ցինգայով մի հիվանդի, որի ձեռքը վառվել է խարույկից, և նա չի զգացել:

Նապաստակին ես դուրս տարա ու դրեցի խրճիթիս պատի տակ, նա այդպես էլ պպզած սառցակտոր դարձավ և մինչև գարուն դիրքը չփոխեց:

Գիշեր էր, Բուրխալայի լեռնանցքից պետք է գնայի Տանզարա: Սաստիկ ցուրտ էր: Մըշուշի թանձրությամբ երկրի վրա նստած սառնամանիքը կաշկանդել, կրակի պես այրում և ածուխի պես սևացնում էր կենդանի էակներին: Քայլում էի կարծեք մեռած մոլորակի վրայով: Տայգան լուռ էր, ոչ մի ձայն, ոչ մի շշուկ: Ինձ թվում էր, թե խլացել եմ: Ահավոր բան է խուլ լռությունը, դժվար՝ շնչառության ժամանակ: Թթվածնի բացակայությունը ըստիպում է բացել օձիքդ, ականջներդ, իսկ դա սառույց մահ է: Ես գիտեի, որ այդպիսի դեպքերում օձիք բացել չի կարելի, փորձեցի ավելի փաթաթել վիզս, և այդ ինձ հաջողվեց: Ես քայլում և օդ էի փնտրում շուրջս,

տուն հասնելու համար դեռ անագին ժամանակ կար: Այդ ծանր պահին հանկարծ գրկանոց երեխայի լացի ձայն լսեցի, հետո ձայնը բարձրացավ, այն տպավորությունը թողեց ինձ վրա, որ ինչ-որ գազան հոշոտում և խեղդում է երեխային. աղեկտուր, պայթելու չափ ահավոր դարձավ այդ ձայնը: Ես վազում էի ծանրացած ոտքերով, գլխապտույտի մեջ, և ինձ թվում էր, թե երբեք չեմ հասնելու: Ի՞նչ գործ ունի այստեղ երեխան, մտածում էի ես: Բևեռային գիշերը քանի գնում, այնքան թանձրանում և սևանում էր: Ես սկսեցի բղավել, իջա ձորակի չորացած սառցապատ հատակը և իմ առջև տեսա հազիվ ոտքերը շարժող, սառչող նապաստակին, այդ նա էր մանկան նման լալիս, պատռվելու չափ ողբաձայն: Նա ինձանից չվախեցավ: Հիշեցի տայգայի որսորդների պատմածները, նրանք ասում էին, որ նապաստակներն այդպես լաց են լինում այն ժամանակ, երբ ցուրտը սաստկանում է և այլևս դիմանալ չեն կարողանում, դրա համար էլ սկսում են վազել իրենց սեփական հետքերով, որ մնում է ձյան վրա, և երբ ցուրտն այնքան է սաստկանում, որ քիչ է մնում փայտանան՝ սկսում են ողբաձայն լաց լինել: Եթե նապաստակները չսկսեն վազել և լաց չլինեն, երևի կսառչեն, սառույց կդառնան: Նրանք իրենք զգում են այդ և վազում են մինչև լուսաբաց ու լալիս բարձրաձայն: Պատահում է նաև, որ լացող նապաստակի ձայնը լսում են սոված գայլերը, և բավականին հեշտությամբ կարողանում են կողմնորոշվել, թե որտեղ է լալիս նապաստակը, և շտապում են որսատեղին: Ես մնացի կանգնած նապաստակի վազքի շրջագծի մոտ, նա մի քանի անգամ իմ մոտով մեծ արագությամբ սլացավ:

«Արահետի վրա բռնված նապաստակը,— բացատրում էր ինձ հետագայում որսորդներից մեկը,— մահացու սնունդ է դառնում գայլի համար, նա այնքան է վազում, որ հոգնածությունից նրա մկանների մեջ կուտակվում է կաթնաթթու, և նրա միսը թունավոր է դառնում, ուտել չի կարելի»: Ես դրանից մխիթարվեցի, ես գայլերին չեմ սիրում, չեմ խղճում, ես այդ բանը չասացի որսորդին, որովհետև արդեն գիտեի, որ տայգայի բնիկները նույնիսկ չնչավորում են անշունչ բնությունը՝ ժայռերը, ջրերը, քամիներն ու հողմերը: Նրանք ոչինչ ոչնչացնել չեն ուզում, բնությունը նրանց համար շնչավոր է, մարդ է, նրանք պահպանում են բնությունը բոլորից լավ ու կրքոտ: Պահպանել բնությունը նշանակում է նաև պահպանել մարդուն, պահպանել այն բոլորը, ինչը որ կա, գոյություն ունի երկրի վրա:




**● — Ինչո՞վ բացատրել,— հեգնանքով հարցնում է հռետորության նշանավոր ուսուցիչ Իսոկրատեսին նրա ծանոթներից մեկը,— որ դուք փայլուն, տաղանդավոր հռետորներ եք պատրաստում, երբ ինքներդ դժվարանում եք ճառ արտասանել:**

**— Հեսանն էլ չի կտրում, սակայն հիանալի դանակներ է սրում,— պատասխանում է Իսոկրատեսը:**

**● Հույն բանաստեղծ Աքիլլես Պարասխոսը իր մի բանաստեղծությունում գրել էր, որ նարգիզը մայիսին է ծաղկում: Երբ ընկերներն ասացին, որ նա սխալվում է, պատասխանեց.**

**— Մի մոռացեք, որ ես բանաստեղծ եմ և ոչ թե բուսաբան...**

**● Մարկ Տվենին հարցրին.**

**— Արևն է ավելի օգտակար, թե՞ լուսինը:**

**— Անկասկած՝ լուսինը, որովհետև արևը լույս է տալիս ցերեկը, երբ դրա կարիքը չկա: Իսկ լուսինը լուսավորում է գիշերը, երբ լույսը մեզ խիստ անհրաժեշտ է:**



**ՌԱՖԱՅԵԼ ԻՇԽԱՆՅԱՆ**
Բանասիրական գիտությունների դոկտոր, պրոֆեսոր

ՋՐՈՒՅՑ ՎԵՑԵՐՈՐԴ

# Հայաստանի և հայերի մասին ամենահին հիշատակությունները

Երբ մարդիկ հնարեցին գիրը, նախ սկսեցին գրել հղկված քարաժայռերի ու քարերի կամ կավե սալիկների վրա: Հին թագավորները հրամայում էին գրագետ ծառաներին փորագրել իրենց արշավանքների, վարած պատերազմների կամ կառուցած շենքերի ու ջրանցքների մասին: Պահպանվել են այդպիսի շատ արձանագրություններ, որոնցում բազմաթիվ երկրների ու ժողովուրդների անուններ կան:

Հիմա մեզ հետաքրքրում է, թե առաջին անգամ արձանագրությունների մեջ երբ են հիշատակվել Հայաստանը և հայը:

Եթե ուզում ենք հին դարերում գրված արձանագրությունների մեջ որևէ երկրի ու ժողովրդի մասին տեղեկություն իմանալ, պետք է նախ իմանանք, թե ինչ անուններով են նրանք կոչվել: Մի ժողովուրդ հնում էլ, հիմա էլ հաճախ մի քանի անուն է ունեցել կամ ունի: Օրինակ, գերմանացիներն իրենք իրենց անվանում են դոյչ, իսկ ֆրանսերեն նրանք կոչվում են ալեման, ռուսերեն և ուկրաիներեն՝ նեմեց: Կամ՝ վրացիներն իրենց անվանում են քարթվելի, իսկ ռուսերեն նրանք կոչվում են գրուզին, գերմաներեն՝ գեորգիեր, հայերն էլ հին ժամանակներից իրենց այդ հարևաններին կոչել են վրացի: Նույնն էլ երկրներն են. մենք ասում ենք Գերմանիա, իրենք՝ գերմանացիները՝ Դոյչլանդ, ֆրանսիացիները՝ Ալեմանյը, ուկրաինացիները՝ Նեմեչինա: Կամ՝ մենք ասում ենք Վրաստան կամ Վիրք, իրենք՝ վրացիները՝ Քարթլի կամ Սաքարթվելո, ռուսները՝ Գրուզիա, գերմանացիները՝ **Գեորգիեն** և այլն:

Հայաստանն ու հայերն էլ հնուց ի վեր տարբեր անուններով են կոչվել: **Մենք** մեզ **հայ** ենք անվանում, երկիրը՝ **Հայք** կամ **Հայաստան**, վրացիները մեզ անվանում են **սոմեխի**, երկիրը՝ **Սոմխեթի**, իսկ մեր շատ հարևաններ հնում և այժմ հայերին ու Հայաստանը կոչել են **Արմեն** անվան զանազան ձևերով: Երկիրը՝ Արմինա, Արմենիա, Արմանստան, Էրմանստան և այլն, մարդկանց՝ **արման, արմինիյա, արմյանին, արմենիներ, էրմանի** և այլն:

Հայաստանը և հայերը ուրիշ անուններ էլ են ունեցել, որոնց մասին դեռ կխոսենք:

Օտարների կողմից հայերին տրվող ամենատարածված **արմեն** (կամ **արման**) անունը առաջին անգամ հանդիպում է մեզնից ավելի քան 4000 տարի առաջ գրված արձանագրություններում: Միջագետքում գտնված Աքքադ պետության թագավոր ասուրաբաբելացի Նարամ-Սուենը շատ արշավանքներ է կատարել դեպի հարևան երկրները: Նա մի քանի արձանագրություններ է փորագրել տալ: Նրանց մեջ հիշվում են այն երկրները, որոնց դեմ թագավորը պատերազմել է մ. թ. ա. մոտ 2270—2230 թվականներին: Այդ երկրներից մեկը կոչվում է **Արմանի** (նաև՝ Արմանում):

Գիտնականների մի մասը կասկածների մեջ էր. նրանք ասում էին, որ իբր **Արմանի** անունով Նարամ-Սուեն թագավորը կոչել է ոչ թե Հայաստանը, այլ Միջերկրական ծովի մոտ գտնվող մի այլ երկիր: Բայց Մեծ Հայքի հարավում գտնվեց Նարամ-Սուենի կանգնեցրած սյունը, այդ թագավորի արձանագրությամբ: Այդ սյունը Աքքադի թագավորը կանգնեցրել էր Արմանի կատարած արշավանքի առթիվ: Ուրեմն, **Արմանի** անունով

Նարամ-Սուենը Հայաստանի հարավային մասն է կոչել։

Որ Արմանին հենց Հայաստանն է, հաստատվեց նաև այլ կերպ՝ բառերի օգնությամբ։ Այսպես. հայտնի է, որ ծիրանի հայրենիքը Հայաստանն է։ Այդ միրգը Հայաստանից են տարել ուրիշ երկրներ, և մի շարք լեզուներով ծիրանը կոչվում է հայկական, օրինակ, հին հռոմեացիները իրենց լեզվով՝ լատիներեն, ծիրանն անվանում էին **արմենիակում**, այսինքն՝ հայկական։ Մինչև այժմ էլ բուսաբանության մեջ ծիրանի լատիներեն գիտական անունն է **պրունուս արմենիակա**, որ նշանակում է հայկական սալոր։ Արաբերեն ծիրանի անուններից է **թուֆահ ալ արմանի**, որ նշանակում է հայկական խնձոր։ Միջագետքի հին բնակիչներից էին արամեացիները, նրանք էլ ծիրանը կոչել են **խազուրա արմենայա** (նույնպես՝ հայկական խնձոր)։

Եվ ահա ասուրաբաբելացիներն էլ ծիրանը կոչել են արմանու։ Պարզ է, որ սա նույնպես պիտի նշանակեր արմանական, այսինքն՝ հայկական։ Ուրեմն, սրանով ևս դարձյալ ապացուցվում է, որ ասուրաբաբելացիները և նրանց թագավոր Նարամ-Սուենը շատ հնում Արմանի անունով կոչել են Հայաստանը, **Արմանու-ի**, այսինքն՝ ծիրանի երկիրը։

Ապա. ասուրաբաբելերեն քարայծը (վայրի այծը) կոչվել է **արմատու** (արմանտու)։ Սա նույնպես նշանակել է հայկական։ Միջագետքում շատ բարձր լեռներ չկան։ Միջագետքը վերջանում է, և նրա հյուսիսում սկսվում են բարձր լեռներ։ Դա Հայկական լեռնաշխարհն է։ Հայկական լեռներում միշտ եղել են և այժմ էլ կան քարայծեր։ Գիտության մեջ մինչև հիմա էլ քարայծի մի տեսակը կոչվում է հայկական վայրի խոյ՝ օվիս օֆիոն արմենիանա։

Հին Հայաստանում այծի պաշտամունք է եղել։ Այդ է պատճառը, որ Գեղամա ու Սյունիքի լեռներում և հին Հայաստանի այլ վայրերում շատ կան այծապատկերներ։

Ասուրաբաբելացիները քարայծերին մեծ մասամբ ծանոթ են եղել Հայաստանի լեռներից և դրա համար էլ անվանել են հայկական։ Ու քարայծի ասուրաբաբելական **արմատու** կամ **արմանտու** անունը նույնպես կապված է երկրի **Արմանի** անվան հետ։

Եվ այսպես, այժմ հայտնի հնադարյան գրավոր աղբյուրներից Նարամ-Սուենի արձանագրությունները առաջինն են, որոնցում հիշվում է Հայաստանը՝ Արմանի անունով։

Նարամ-Սուենը հիշատակում է նաև Արմանիի—Հայաստանի այն ժամանակվա թագավորին՝ Մադականա անունով։ Մադականան հայոց ցեղապետ էր։ Նա Մեծ Հայքի հարավում պատերազմել է Նարամ-Սուենի աքքադական զորքերի դեմ։

Արձանագրություններից իմանում ենք, որ Հայաստանի դեմ պատերազմել է նաև Նարամ-Սուենի պապ Սարգոն թագավորը։ Սարգոնը և նրա թոռ Նարամ-Սուենը Հայաստանում ուժեղ դիմադրության են հանդիպել։ Արձանագրություններից պարզ է դառնում, որ նրանք իրենց հարձակումները Հայաստանի դեմ մի քանի անգամ կրկնել են։ Դա նշանակում է, որ նրանք պարտվել են և հետո նորից հարձակվել։

Այն ժամանակներից սկսած Հայաստանի և Միջագետքի պետությունների միջև մի շարք պատերազմներ են եղել։ Բայց շատ են եղել նաև խաղաղ ժամանակներ ու բարի հարաբերություններ։

Նարամ-Սուենի արձանագրություններում հիշվում է նաև Էբլա պետությունը, որի դեմ նույնպես պատերազմել է Աքքադի թագավորը։ Էբլան գտնվել է Միջագետքից դեպի արևելք, այժմյան Հալեպ քաղաքի մոտ։ Վերջին ժամանակներս այնտեղ պեղումներ կատարվեցին։ Հողի տակից դուրս եկավ մի ամբողջ քաղաք, գտնվեցին սեպագիր շատ արձանագրություններ։ Այդ արձանագրությունների մեջ հիշվում են **հայա** ժողովրդի մարդիկ, որոնք մի այլ երկրից եկած են եղել Էբլա։ Ահա, սա էլ մեր **հայ** անվան առաջին հիշատակությունն է՝ մ. թ. ա. 3-րդ հազարամյակի վերջերին։

(շարունակելի)







ԼԵՎՈՆ ԱՆԱՆՅԱՆ

# ՃԱՆԱՊԱՐՀԸ ԹԵԵՎ ԴԺՎԱՐ Է...

Նրա անդրանիկ ելույթը տեղի ունեցավ կամերային երաժշտության տանը, Ալ. Սպենդիարյանի անվան երաժշտական դպրոցի հաշվետու համերգին: Երկու տարի առաջ էր: Տասնամյա ջութակահարի մասին մամուլը գրեց. «Ջերմ ծափերի արժանացավ ջութակի երկրորդ դասարանի աշակերտ Լևոն Մկրտչյանը, որի հետ մանկավարժները մեծ հույսեր են կապում»: Այդ օրը լուսանկարել են նրան ելույթի պահին: Լուսանկարում տղան կանգնել է հուզված ու երջանիկ, մի ձեռքով ջութակն է ամուր գրկել, մյուսով՝ ծաղիկները, և նրա ներշնչված հայացքը, ասես աներևույթ միջանցք գտած՝ կտրում-անցնում է ունկնդիրների ստվար շարքերը և ելնում դահլիճից դուրս, գնում հեռո՜ւ-հեռու: Ունկընդիրները չեն երևում, սակայն օբյեկտիվը ասես պահի մեջ դրոշմել է դեռ չմարած ծափերի որոտը:

Դրան հաջորդել են նոր ելույթներ՝ տարբեր բեմերից, տարբեր մրցույթների ու ստուգատեսների ժամանակ՝ անխտիր հիացական արձագանքներով: Մեր օրերում հաճախ երեխաների նախասիրությունները թելադրվում են ծնողների կամքով: Բայց սա այն դեպքն է, երբ ծնողների ցանկությունը և երեխայի հնարավորությունները հիանալի զուգադիպել են: Հորից՝ ՀԿԿ Կենտկոմի հրատարակչության տպարանի ցինկոգրաֆիայի արտադրամասի պետ Սերգեյ Մկրտչյանից, նա սովորել է կարգուկանոն, մորից՝ Վանուհուց, որ գիտաշխատող է, ժառանգել է սերը արվեստի հանդեպ: Լևոնի բախտը բերել է հոգատար ուղեցույց ունենալու հարցում, որպիսին է Հայկական ՍՍՀ վաստակավոր ուսուցչուհի Մարջիկ Ծատուրյանը՝ հմուտ մասնագետ, որի խստապահանջությունը հալվում է սաների ելույթներից հետո նրա աչքերում հայտնըվող արցունքներում...

Լևոնը համոզված է, որ ինչքան էլ օգնեն ծնողներն ու մանկավարժները, այնուամենայնիվ, յուրաքանչյուրի հաջողություններն ու ձախողումները վերջին հաշվով կախված են իրենից: Օրական չորս ժամ նա նվիրում է ջութակին՝ բնական օժտվածությանը, երաժշտականությանն ու բացարձակ լսողությանը հավելելով աշխատասիրությունը: Սակայն էլ ի՞նչ երաժիշտ, եթե չհետևի համերգաշրջանի նորույթներին, ձայնապնակներ չունկնդրի, երաժշտական գրականություն չկարդա: Հապա դասե՞րը: Հանրակրթական դպրոցում Լևոնի ազգանվան դիմաց միայն գերազանցներ են դրվում: Նա հասարակական աշխատանքների ակտիվ մասնակիցներից է:



Լուսանկարը՝ ՎԼԱԴԻՄԻՐ ՍԱՐԳՍՅԱՆԻ

*Անդրկովկասյան հանրապետությունների և Ռոստովի երաժշտական դպրոցներից Երևան էին ժամանել պատանի երաժիշտներ՝ մասնակցելու ՍՄԿԿ XXVII համագումարին նվիրված բարեկամության համերգին: Շատերի հետ իր ելույթով ներկաներին հաճելի պահեր պարգևեց նաև Լևոն Մկրտչյանը:*

— Իսկ ազատ ժամանակ մնո՞ւմ է խաղերի համար:

Զրույցին միանում են ծնողները.

— Նա բազմաթիվ ընկերներ ունի, սիրում է ֆուտբոլ խաղալ, զբաղվում է մարմնամարզությամբ:

— Ամեն մեկը ինքն է իր ժամանակի տերը,— եզրակացնում է Լևոնը,— կարևորը ճիշտ կազմակերպելն է:

Ստեղծագործական կայծը նրա մեջ մշակել է նպատակին հասնելու կամք:

— Հուզվո՞ւմ ես համերգներից առաջ,— հարցնում եմ Լևոնին:

Մի պահ մտածում է, ապա հստակ բացատրում.

— Անհնար է չհուզվել: Բայց եթե լավ եմ նախապատրաստվում, անբացատրելի վստահություն է իջնում վրաս: Հենց որ բեմ եմ բարձրանում, հավաքում եմ ինձ, ինչ-որ անտեսանելի պատ է գոյանում իմ և արդեն ինձնից դուրս գտնվող հուզմունքիս միջև, մոռանում եմ դահլիճի գոյությունը, ես եմ և ջութակս...

Այժմ մեր հանրապետության 104 երաժշտական դպրոցներում սովորում են 33.500 աշակերտներ: Նրանք բոլորն էլ ինքնաբացահայտման հավասար հնարավորություններ ունեն: Ինչին այսօր հասել է Լևոնը, վաղը կհասնեն նրանք, եթե աշխատեն համառ ու տքնաջան: Եվ ճանապարհը որքան էլ դժվար լինի՝ ում հասցնի բեմ, նա անպայման կունենա հիացական ծափերի իր բաժինը:

# Երկիրը վերևից

**Մարդը թռչում է տիեզերք, որպեսզի ուսումնասիրի այլ մոլորակներ՝ տեսնի այն, ինչ հնարավոր չի եղել տեսնել երկրից։ Եվ այդքան հեռու թռչելով, մարդը էլ ավելի լավ է տեսնում իր սեփական տունը, իր մոլորակը։ Տիեզերական տեխնիկան երկրաբաններին օգնել է ուսումնասիրելու երկրի խոր անցյալը, նրա ընդերքը։ Այդ մասին է պատմում երկրաբանա-հանքաբանական գիտությունների դոկտոր, ՍՍՀՄ պետական մրցանակի դափնեկիր Վլադիմիր Վիկտորի Կոզլովը։**

—Երկրի տիեզերքից կատարված լուսանկարներում երկրաբանները տեսել են այն, ինչ հնարավոր չէ նկատել ոչ ինքնաթիռից, ոչ էլ, մանավանդ, ճանապարհորդելով։ Այն, որ տիեզերական հետազոտությունները երկրաբանների առաջ բացեցին նավթի, գազի և հանքային պարարտանյութերի որոնման հեռանկարային շրջաններ և օգնեցին նոր հանքավայրեր գտնելու, դուք, անշուշտ, գիտեք։ Տիեզերական նկարահանումները պակաս կարևոր չեն երկրի կառուցվածքն ու պատմությունը ուսումնասիրող երկրաբանների համար։ Օրինակ, երկրի կեղևում հաջողվեց հայտնաբերել վիթխարի ճեղքվածքներ, որոնք ձգվում են հարյուրավոր և նույնիսկ հազարավոր կիլոմետրեր (այդպիսի ճեղքվածքների մոտ, որպես կանոն, զետեղված են օգտակար հանածոների հանքավայրերը)։ Բացի այդ, տիեզերական լուսանկարներում հանկարծ սկսեցին նկատվել մինչև մեկուկես հազար տրամագծով երկրաբանական տարբեր տեսակի հսկայական «օղակներ»։ Այդպիսի «օղակները» շատ-շատ են, նրանք հայտնաբերված են երկրի բոլոր մայր ցամաքներում։ Երբ տիեզերանավերի օգնությամբ ստացվեցին Լուսնի, Մարսի, Վեներայի, Մերկուրիի պատկերները, նրանց վրա նկատվեցին թե՛ երկրի վրա հանդիպող, թե՛ բոլորովին անհայտ երկրաբանական կառուցվածքներ։

Ո՞րն է նմանության և տարբերության պատճառը։

Այս հարցերը երկրաբաններին հանգեցրին այն հետևության, որ անհրաժեշտ է համեմատել երկրի և նրան մոտիկ գտնվող մոլորակների կառուցվածքները՝ իմանալու համար նրա ծագման ու զարգացման պատմությունը։ Այսպես ծնվեց նոր գիտաճյուղ՝ համեմատական մոլորակագիտություն։

Թե ինչ կազմություն ունի Երկիրը, դուք գիտեք. ներսում միջուկն է, նրան շրջապատում է մանտիան, իսկ վերջինիս, իր հերթին, ծածկում է կեղևը։ Ցամաքային կեղևի վրա (այն շատ հաստ է՝ 70—80 կմ) տեղավորված են մայր ցամաքները, իսկ օվկիանոսայինը (հաստությունը ընդամենը մի քանի կիլոմետր) ծառայում է որպես հատակ ծովերի և օվկիանոսների համար։ Տիեզերական հետազոտությունները հաստատեցին, որ Մերկուրին, Վեներան և Մարսը նույնպես նման կառուցվածք ունեն։ Այնտեղ ևս օվկիանոսային կեղև կա, բայց ջուր չկա։ Հետաքրքիր է, որ բոլոր մոլորակների ցամաքային կեղևը կենտրոնացած է մի կիսագնդում, իսկ օվկիանոսայինը՝ ուրիշ։ Օրինակ, երկրագնդում համարյա բոլոր ցամաքները գտնվում են հյուսիսային կիսագնդում, իսկ հարավայինում՝ միայն Ավստրալիան, Անտարկտիդան և Հարավային Ամերիկայի մի մասը։ Այս օրինաչափությունը դեռևս կարոտ է գիտական պարզաբանման։

Հարևան մոլորակների վրա հաջողվեց հայտնաբերել հսկայական կլոր իջվածքներ, որոնք առաջացել են երկնաքարերի ընկնելու հետևանքով։ Այդ իջվածքները անվանվում են աստրոբլեմներ՝ «աստղային խոցեր»։ Մինչ

այդ երկրի վրա աստրոբլեմներ չեն հանդիպել, բայց հետազոտողները դրանք տեսնելով Լուսնի և Մարսի վրա, տիեզերքից նույնը հայտնաբերեցին նաև մեր մոլորակի մակերևույթին: Այսօր հայտնաբերված են մի քանի տասնյակ երկրային երկնաքարերի խառնարաններ: Ահա այսպես հարևան մոլորակային մարմինների ուսումնասիրությունը մեզ օգնեց ավելի լավ ծանոթանալու հարազատ տան՝ մեր մոլորակի հետ:

Մոլորակների զարգացման պատմության համեմատությունը ցույց է տալիս, որ նրանք կենդանի օրգանիզմների նման հասունանում և մահանում են: Մոլորակի մեծությունը, նրա հեռավորությունը Արեգակից, նյութը, որից այն կազմված է՝ ահա թե ինչն է որոշում Արեգակնային համակարգության բոլոր մոլորակների կենաց ճանապարհը: Համեմատական մոլորակագիտությունը, որը հիմա գտնվում է իր շատ գրավիչ ուղու սկզբում, գլխավորելով մեր մոլորակի անցյալի ուսումնասիրությունը՝ կօգնի ավելի խոր իմանալու նրա ներկան ու ապագան:

## Անտառը պահպանվում է տիեզերքից

**Անտառապահին մենք միշտ պատկերացնում ենք որպես անխոնջ հետիոտնի, որը ամեն օր շրջագայում է իր տիրույթները, իր տեղամասում հիշում է համարյա ամեն մի ծառ, պահպանում անտառը հիվանդություններից ու հրդեհից: Մի խոսքով, բոլորովին «երկրային» մասնագիտություն... Կարո՞ղ են անտառապահին օգնել տիեզերական սարքերը, ի՞նչ նոր բան են տեսել գիտնական անտառագետները տիեզերական բարձունքից: Այս հարցերին է պատասխանում գյուղատնտեսական գիտությունների թեկնածու, «Անտառնախագիծ» միավորման պետի տեղակալ Վասիլի Իվանի Սուխիխը:**

— Պատկերացրեք, որ անտառը ևս հարմար է հսկել բարձրից: Արդեն քսանական թվականներին, երբ սովետական ավիացիան նոր էր միայն ծնվում, անտառապահները սկսեցին օդ բարձրանալ: Նրանք ուզում էին տեսնել ռուսական անծայրածիր անտառները, որոնք այն ժամանակ համարյա ուսումնասիրված չէին: Ոչ ոք չգիտեր՝ ինչքան են դրանք, ինչ տեսակներից են կազմված, որտեղ են անում երիտասարդ ծառերը, որտեղ՝ տարիքովները և շատ այլ բաներ: 1985 թվականից սկսած ինքնաթիռներից արված դիտումներն ու լուսանկարահանումներն օգնեցին հետազոտել երկրի համարյա բոլոր անտառային տարածությունները:

Հետազոտությունները տիեզերքից, իհարկե, ընդլայնեցին անտառային ծառայության հնարավորությունները: Անտառը կենդանի օրգանիզմ է, այն մեծանում ու ծերանում է, երբեմն՝ հիվանդանում, ենթարկվում տարբեր միջատների ու կենդանիների արշավանքներին, որոնք կարող են նրան վնաս բերել, անտառը նաև կտրում են... Այս ամենը փոխում է անտառային տարածությունների կառուցվածքը, նրանց գույնը, լույսի անդրադարձման ընդունակությունը, տերևների խտությունը: Այս փոփոխությունները պատկերվում են նաև տիեզերական լուսանկարներում: Հատկապես հարմար է այն, որ այս տեղեկությունները կարելի է ստանալ կանոնավոր և բավական հաճախ: Երկրի արհեստական արբանյակները երկրագնդի շուրջը պըտտվում են որոշակի ուղեծրով և նրանց սարքավորումները նկատում են այն ամենը, ինչ տեղի է ունենում անտառներում:

Տիեզերքից անտառների առաջին իսկ զննումները ցույց տվեցին «կանաչ ալիքի» ուղղությունը: Գարնան հետ ծառերի վրա երևում են նոր տերևներ, ժամանակի հետ նրանք ավելի ու ավելի են շատանում, ընդարձակվում, մեծանում են ծառերի սաղարթները: Գարունը տեղաշարժվում է հարավից հյուսիս և, նեղելով ձմռանը, ազատագրում նորանոր շրջաններ: Տիեզերական լուսանկարներում տաքության այդ տեղաշարժը պատկերվում է հենց միևնույն տերիտորիաների տեսքի փոփոխությամբ: Դա, իրոք, կա-





րելի է համեմատել ալիքի շարժման հետ։ Աշնանը վրա են հասնում ցըրտերը, տերևները դեղնում են, գորշանում, ծառերից ցած ընկնում։ Սկսվում է «շագանակագույն ալիքը», որը ցրտի հետ շարժվում է հյուսիսից հարավ։ Սա նույնպես նկատում են տիեզերական օբյեկտիվները։

Նման դիտումները շատ կարևոր են անտառային տնտեսության ճիշտ վարման համար։ Նրանք օգնում են հետևելու անտառների վիճակին, նրանց զարգացմանը, անտառապահպանման միջոցառումների ժամանակին անցկացմանը։

Անտառների ամենավտանգավոր թշնամին կրակն է։ Հրդեհը կարող է կարճ ժամանակում հսկայական հեկտարների վրա ոչնչացնել բոլոր ծառերը։ Լավ կլինի ընդհանրապես թույլ չտալ, որ հրդեհ բռնկվի, բայց եթե այն սկսվել է, պետք է շատ արագ հանգցնել։

Ծառերի խիտ սաղարթներով ծածկված ամենափոքր խարույկն իսկ բարձրից կարելի է նկատել հատուկ սարքերի՝ ջերմացույցների օգնությամբ։ Այդ սարքերը որսում են ջերմության ամենաչնչին բարձրացումը։ Ջերմադիտումը տիեզերական բարձունքից օգնում է արագ դիտելու մեծ տարածություններ։ Ամռան շոգ ամիսներին, երբ երկար ժամանակ անձրևներ չեն լինում, հետազոտությունը արբանյակներից օրվա մեջ կարելի է կատարել մի քանի անգամ։ Եվ եթե որևէ տեղամասում նկատվում է հրդեհի վտանգ, ապա անմիջապես պետք է ուղարկել պահակային ինքնաթիռ։

Երբ ծառերը հիվանդանում են, մարդկանց նման ջերմությունն էլ է բարձրանում։ Ջերմային լուսանկարումը անտառների համար ծառայում է որպես շատ զգայուն, յուրօրինակ ջերմաչափ։ Ազդանշանն այն մասին, որ որևէ տեղամաս «ջերմում է», տիեզերքից շատ ավելի շուտ է հասնում, քան դա կնկատեր նույնիսկ փորձված անտառապահը։

Տիեզերական հսկողությունը անտառների վրա երկարացնում է անտառների կյանքը, օգնում նրանց աճին, հարստացնում մեր գիտելիքները երկրի բնության մասին։

## Տիեզերական պարեկ

**Մի քանի տարի առաջ, 1982 թվականին, Բրիտանական Կոլումբիայի լեռներում կանադական ինքնաթիռը, որի մեջ կային երեք օդաչուներ, ընթարկվեց աղետի։ Օդաչուները դեպքն այսպես են նկարագրել. «Մեր առջևում անակնկալորեն հայտնվեց վտանգավոր լեռնալանջ։ Ինքնաթիռը չկարողացավ այն շրջանցել։ Ջոնն անհավատալի ջանքեր գործադրեց, որպեսզի ինքնաթիռն իջեցնի ծառերի վրա։ Երբ մենք ընկանք, լսվեց խլացուցիչ ճայթյուն։ Մենք ջարդված էինք և արյուն շատ էինք կորցրել։ Ջանալով հնարավորին չափ օգնել միմյանց, մենք, միաժամանակ, խորհում էինք, թե ինչպես դուրս գանք այստեղից։ Մեզ մնացել էր հուսալ և աղոթել»։**

Հույսն իրոք, որ աղոտ էր՝ շուրջը բարձր լեռներ էին ու բացարձակ ամայություն։ Եվ ահա, ինչպես հրաշք, ինչպես տեսիլք՝ որոնող ինքնաթիռ, որը վստահորեն գալիս էր աղետի վայրը։ Մի քանի ժամ հետո աղետի ենթարկվածները հասցվեցին հոսպիտալ։ Նրանց համար դժվար էր հավատալ, թե իրենց փրկությամբ հրաշքին չեն պարտական, այլ երկրից հազար կիլոմետր բարձր թռչող փոքրիկ աստղիկին՝ սովետական «Կոսմոս—1383» արբանյակին։ Այդ արբանյակի տիեզերք դուրս գալու պահից՝ 1982 թվականի հունիսից, իր աշխատանքն էր սկսել միջազգային ԿԱՍՊԱՍ—ՍԱՐՍԱՏ փրկարար սիստեմը։ Կանադական օդաչուները երկրի առաջին մարդիկ էին, որոնք փրկվեցին տիեզերական պարեկի օգնությամբ։

Ահա թե ինչ է պատմում ԿԱՍՊԱՍ սիստեմի կենտրոնի պետ Ա. Վ. Բելոուսովը։

— ԿԱՍՊԱՍ և ՍԱՐՍԱՏ անվանումները ռուսերեն ու անգլերեն լեզու-

ներով մոտավորապես նույն հապավումներն են՝ տիեզերանավերի ու ինքնաթիռների վթարային հսկման տիեզերական սիստեմ: Չնայած այսօր տիեզերանավերն ու ինքնաթիռները հագեցված են կատարելագործված սարքավորումներով, նրանք բավական հաճախ են հանդիպում աղետի: Ծովը և օդային օվկիանոսը դեռ մնում են ահեղ տարերք, որի հետ պայքարում միշտ չէ, որ մարդը հաղթող է դուրս գալիս: Դրա համար մարդկանց կյանքը երբեմն ուղղակիորեն կախված է նրանից, թե ինչքան արագ են փրկարարները որսում «SOS» ազդանշանը և օգնության հասնում:

Խիստ կանոններ կան այն բոլոր ռադիստների համար, որոնք որոշակի ժամանակահատվածում պետք է եթերից որսան վթարային ալիքներ: Բայց դա միշտ չի օգնում՝ որևէ հեռավոր շրջանից ուղարկված օգնության կանչը կարող է և չհասնել:

Ահա թե ինչու ծնվեց այն գաղափարը, որ կարելի է աղետի ենթարկվածների որոնումը կատարել տիեզերքից: Պատկերացրեք՝ Երկրից բարձր, համարյա շրջանաձև ուղեծրով թռչում է արբանյակը: Նրա դաշտում կա ռադիոտեսողություն՝ ավելի քան հինգ հազար կիլոմետր տրամագիծ ունեցող գոտիով: Արբանյակը անմիջապես տեսնում է այնքան տարածություն, ինչքան որ Ատլանտյան օվկիանոսի կեսը կամ ամբողջ Եվրոպան է՝ Միջերկրական, Սև, Կասպից և Հյուսիսային ծովերը ներառյալ... Երկրի շուրջը մեկ պտույտի ընթացքում արբանյակը հասցնում է հետազոտել այնքան տարածություն, որը տեսնելու համար անհրաժեշտ են միաժամանակ օդ բարձրացած հազար ինքնաթիռ: Պատկերացրեք այնուհետև, որ Երկրի վրա թռչում են ոչ թե մեկ, այլ մի քանի արբանյակ: Եվ նրանք բոլորը լսում են վթարային ազդանշան-ալիքը: Դա գործնականում նշանակում է, որ մոլորակի ցանկացած վայրում տեղի ունեցած վթարը նկատվում է ոչ ուշ, քան մեկ-երկու ժամ հետո, և դա այն ժամանակ, երբ չի հաջողվում վթարը շուտ նկատել: Իսկ եթե հաջողվում է, ապա արբանյակը աղետի մասին ազդանշան է ուղարկում մի քանի րոպե անց:

Շատ տիեզերանավեր և ինքնաթիռներ սարքավորված են որպես վթարային ռադիոհաղորդիչներ: Արբանյակներից որսված նրանց ազդանշանները անմիջապես հաղորդվում են կապի երկրային կենտրոններ: Արդեն ստեղծված են այդպիսի վեց կենտրոններ: Նրանք տեղաբաշխված են տիեզերական փրկարար սիստեմն հիմնադրող երկրներում՝ ՍՍՀՄ-ում, ԱՄՆ-ում, Ֆրանսիայում, Կանադայում, ինչպես նաև Անգլիայի և Նորվեգիայի տերիտորիաներում: Կենտրոնից աղետի ենթարկվածների մասին հաղորդումը ընդունվում է աղետին ամենամոտ շրջանից, որտեղ արդեն գործի են անցնում փրկարար ծառայությունները:

Միջազգային տիեզերական պարեկության ծրագրերը կանխատեսվում են չորս արբանյակների ուղեծրերի արդյունքներով: Նրանցից երեքն արդեն օդում են: Իրենց կյանքով նրանցից առաջինին՝ սովետականին են պարտական կանադական օդաչուները: 1983 թվականին բաց է թողնված ևս մեկ արբանյակ՝ ամերիկյան, բայց այն, ցավոք, շարքից դուրս է եկել:

Մոտ ապագայում տիեզերական պարեկության սիստեմը պետք է ընդգրկի ամբողջ երկրագունդը: Եվ այն արդեն հասել է նշանակալից արդյունքների: 1982 թ. սեպտեմբերից մինչև 1984 թ. կեսերը նրա օգնությամբ արդեն նկատվել է հարյուր աղետ և փրկվել 300 մարդ, որոնց մեջ մի անգամ չէ, որ եղել են նաև աղետի ենթարկված սովետական անձնակազմեր:

ԿԱՍՊԱՍ—ՍԱՐՍԱՏ սիստեմի ստեղծումը օրինակ է այն լավագույն հնարավորությունների, որոնք օգնում են միջազգային համագործակցությանը տիեզերքում: Իզուր չէ, որ նրա մասնակիցները իրենց սիստեմը հայտարարել են ազատ: Դա նշանակում է, որ ցանկացած պետություն ցանկացած ժամանակ կարող է միանալ նրան:

Նկարները՝ ԽՈՐԵՆ ՀԱԿՈԲՅԱՆԻ

## ԳԻՏԵ՞Ք, ՈՐ...



● «Նուիրամաշաբելի» սուահիլի լեզվով նըշանակում է «մեծահասակ կին, որն ապրում է անտառում՝ միայնակ»: Այսպես էին կոչում աֆրիկացիները հայտնի կենդանաբան ամերիկուհի Դիան Ֆոսսին: Դիանը 18 տարի ապրել է Ռուանդայի (Աֆրիկա) արևադարձային անտառներում և ուսումնասիրել է լեռնային գորիլլաների վարքը, լեզուն և պահվածքը: Դիանը գիրք գրեց, որի վերնագիրն էր «Գորիլլաները մշուշում»: Այդ գրքում Դիանը տագնապով խոսում է այն մասին, որ աֆրիկական լեռնային գորիլլաները գտնվում են ոչնչացման եզրին:

Նոր տարուց մի քանի օր առաջ Դիան Ֆոսսին զոհվեց որսագողերի գնդակից, պաշտպանելով գորիլլաների ձագերին: Մարդիկ, որոնք ազահության մոլուցքով եկել էին ջունգլիներ, չխնայեցին կնոջը, որը դարձել էր նրանց ոհիրի վկան:

● Աշխարհի ամենաբարդ ժամացույցը ստեղծել է շվեյցարական «Օմեգա» ֆիրմայի ինժեներ Դոմենիկո Ռոազան: Այն կոչվում է «Ռոզա»: Սարքը ցույց է տալիս Եվրոպայի, Ամերիկայի և Ավստրալիայի մի քանի քաղաքների ժամանակը, ինչպես նաև արևի, լուսնի, մոլորակների և մեծ համաստեղությունների դիրքը ամեն մի ակնթարթ: Ժամացույցի վրա տեղադրված վարդը թերթիկները բացում և փակում է այնքան անգամ, որքան ցույց է տալիս ժամացույցի պաքը:

Ֆիրմայի մասնագետները խոստովանում են, որ ժամագործության այդ հրաշքը վաճառքի համար չէ նախատեսված, քանի որ այն իրենից ներկայացնում է մի յուրահատուկ մեխանիզմ, որի գաղտնիքը կբացվի միայն 2000 թվականի հունվարի մեկին:

● Կան մարդիկ, որոնք երազներում տեսնում են հրաշալի մտահղացումներ: Մի կողմից դա լավ է, իսկ մյուս կողմից՝ վատ. չէ որ ուղեղն էլ պետք է հանգստանա:

Համենայնդեպս, երազների առումով, Նյու Յորքի համալսարաններից մեկի աշխատակից Ջոն Լոուելի բախտը բերում է: Մասնագիտությամբ նա ինժեներ-կոնստրուկտոր է: Նա պնդում է, որ իր հայտնագործություններն և ռացիոնալիզատորական առաջարկությունների մեծ մասը տեսել է երազում: Այդպես է, թե ոչ, բայց Լոուելը համարվում է տաղանդավոր գյուտարար և արդեն մի շարք հեղինակային վկայականներ ունի: Ամեն ինչ կարծես լավ է՝ քնիր ու քեզ համար երազում հայտնագործություններ արա:

Բայց մարդու էությունն այնպիսին է, որ միշտ ինչ-որ բանից դժգոհ է: Լոուելը բացառություն չէ: Նա հավաստիացնում է, որ իր երազներից ամենայուրահատուկները նման են արևախում հրեշի: Ամբողջ գիշեր տանջում են իրեն, իսկ լուսաբացին՝ անհետանում: Այդ պատճառով, ամենալավ մտահղացումները մնում են չիրագործված:

● Ֆրանսիայի հյուսիսային շրջանում է գտնվում փոքրիկ Կոմենտերալ գյուղը: Այստեղի բնակիչները իրենց շատ տարօրինակ են պահում: Աշնանը, երբ սկսվում են անձրևները, տանը նստելու փոխարեն, դուրս են գալիս փողոցներում ուրախանալու: Տարվա ամենաանձրևոտ օրերից մեկը այստեղ կոչվում է «մկրտության տոն»:

Առավոտ վաղ բոլոր տղամարդիկ՝ երեխաներից մինչև զառամյալ ծերունիները, հագնում են ֆրակ և ցիլինդր դնում: Ճիշտ է, այդ ֆրակները պարկացու կտորից են, իսկ ցիլինդրները՝ ծղոտից, բայց մասնակիցների առջև դժվար խնդիր է դրված: Նրանցից յուրաքանչյուրը պետք է կարողանա մինչև կեսօր իրեն պահել այնպես, որպեսզի չընկնի ցեխի մեջ, ուր նրան հրում են իր համագյուղացիները: Շատ քչերին է դա հաջողվում, քանի որ հրել թույլատրվում է ամեն ձևով:

Այս սովորույթը ծնվել է դեռ միջին դարերում: Գյուղի բնակիչները այսպես են մեկնաբանում այդ զվարճանքը՝ մինչև ոսկորները կթրջվեն, ցեխի մեջ լող կտաս, սակայն հետո ձմեռային երկար գիշերներին հիշելու բան կլինի:



ՌՈՒԲԵՆ ՀՈՎՆԱԹԱՆՅԱՆ «ՊԱՏՇԳԱՄԲՈՒՄ», 1985

«ՊԻՈՆԵՐ» № 1-Ի ԺԱՄԱՆՑԻ ՊԱՏԱՍԽԱՆԸ՝
«ՇՆՈՐՀԱՎՈՐ ՁԵՐ ՆՈՐ ՏԱՐԻՆ, ՍԻՐԵԼԻ ԲԱՐԵԿԱՄՆԵՐ»



Գլխավոր խմբագիր՝ **ԱՆԱՀԻՏ ՍԱՀԻՆՅԱՆ**

Խմբագրական կոլեգիա՝ ԳՐԻԳՈՐՅԱՆ Վ., ԹԱԴԵՎՈՍՅԱՆ Թ., ԽԱՆՋՅԱՆ ԳՐ., ԿԱՊՈՒՏԻԿՅԱՆ Ս., ՀԱԿՈԲՅԱՆ Հ., ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ Հ., ՀՈՎՍԵՓՅԱՆ Ռ., ՄԻԼԻՏՈՆՅԱՆ Է., ՄԻՐԱՎՅԱՆ Հ., ՍՄԲԱՏՅԱՆ Կ.:

Պատասխանատու քարտուղար՝ ՏՈՆՈՅԱՆ Թ., գեղարվեստական խմբագիր՝ ՔԵՉՕՂԼՅԱՆ Մ., տեխնիկական խմբագիր՝ ՆԱԼԲԱՆԴՅԱՆ Շ., սրբագրիչ՝ ԱՅ-ՎԱԶՅԱՆ Վ.:

**ԻՆԴԵՔՍ՝ 77806 ԳԻՆԸ՝ 15 ԿՈՊ.**